

# ՀԵՔԻԱԹ ՁՄԵՌ ՊԱՊԻ, ՁԻԵՐԻ ԵՎ ՁՅՈՒՆԻ ՄԱՍԻՆ

*ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ*

*Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

Գարունն անցավ,
Ձմեռ պապին սպասեց:

Ամառն անցավ,
Ձմեռ պապին սպասեց:

Աշունն եկավ,
Հասան մրգերը բոլոր,
Մառանները լցվեցին հաց ու գինով...
—Ժամն է,— ասաց Ձմեռ պապին,—
Գնացի:—
Սուլեց թեթև,
Հայտնվեցին երեք ձի,
Երեք ճերմակ,
Երեք կայծակ,
Երեք քոց՝
Լծված հրաշք մի սահնակի ոսկեզօծ:

—Ա՜-ո՜ւ-ո՜ւ,— կանչեց,
Ու ձիերը ամեհի
Խրխնջացին ու ծառս եղան կրակված,
Եվ խրխինջը բախվեց հեռու աստղերին,
Փշո՜ւր-փշո՜ւր, փաթի՜լ-փաթի՜լ թափվեց ցած:

—Ձյո՜ւն է գալիս:
Ձյո՜ւն է գալիս,— ճչացին
Մանուկները ու խուռներամ եկան բակ:
Լույսերի մեջ ու այգու մեջ դիմացի
Մի հին հեքիաթ էր հյուսում ձյունը ճերմակ:

# ԿԱՂ ՁՄԵՌ ՊԱՊԻՆ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

Բոլոր երեխաները, չգիտես ինչու, համոզված են, որ թիթեռն ապրում է երեք օր:

— Իսկ Ձմեռ պապի՞ն:

— Ձմեռ պապին՝ ի՞նչ,— հարցրեցի ես, որովհետև չգիտեի ինչի մասին է մտածում որդիս:

— Քանի՞ օր է ապրում Ձմեռ պապին:

Ես մտածմունքի մեջ ընկա: Ասել՝ մեկ, քիչ է, խիղճս թույլ չի տալիս: Ասել՝ երկու: Կհարցնի՝ ինչո՞ւ երկու: Երեքն էլ թիթեռի կյանքի տևողությունն է:

— Ձմեռ պապին շատ է ապրում, բալի՛կ: Նա բոլորովին չի մեռնում:

— Իսկ Նոր տարուց հետո ո՞ւր է գնում:

— Կա հեռու մի երկիր, շա՜տ հեռու, այստեղից չի երևում: Բոլոր Ձմեռ պապիներն այնտեղ են ապրում,— կարծիքովս՝ երեխայի հասկացողության մակարդակին իջնելով, ասացի ես:

— Չեմ հավատում,— հառաչեց երեխան:— Ձմեռ պապիները միայն մի օր են ապրում: Երեխաները խաղում են տոնածառի շուրջը, պարում են, երգում, Ձմեռ պապին՝ նրանց հետ: Իսկ մյուս օրը երեխաները տեսնում են տոնածառը չկա, Ձմեռ պապին չկա: Մեռել է:

Ես չէի ցանկանում, որ երեխան այդպիսի տխուր կարծիք ունենա Ձմեռ պապիների մասին: Ինչքան համոզեցի, ոչինչ դուրս չեկավ: Երեխան չէր լսում:

— Ա՛յ, վաղը մենք կգնանք և Ձմեռ պապին էլ այնտեղ չի լինի,— ասաց նա:

Մենք հենց նոր էինք վերադարձել մեր հիմնարկության դահլիճից, որտեղ երեխաս պարել էր տոնածառի շուրջը: Հունվարի մեկն էր: Նա դեռ ձեռքին սեղմած պահում էր Ձմեռ պապի նվերը՝ ցելոֆանե տոպրակի մեջ: Անգամ այդ նվերը անձամբ Ձմեռ պապից չէր ստացել, Ձմեռ պապին ասաց, որ բոլոր պարող և չպարող երեխաները նվերներ կարող են ստանալ մուտքի մոտ կանգնած քեռուց, նրան ներկայացնելով կտրոն, «որը ձեր հայրիկի կամ մայրիկի մոտ է»:

— Ինչո՞ւ,— զարմացավ երեխաս:— Ինչո՞ւ ինքը չի բաժանում:

Տոնահանդես գնալու ամբողջ ճանապարհին նա նվերի մասին էր խոսում, ես էլ սովորեցրել էի ինչպես շնորհակալություն հայտնել, և նույնիսկ՝ փոքրիկ մի ոտանավոր: Տարիներ առաջ, երբ ահա այսպես իմ մայրը ձեռքս բռնած ինձ տանում էր Նոր տարվա տոնահանդեսի, այդ ոտանավորը նույնպես





ճանապարհին նա էր ինձ սովորեցրել: Լավ հիշում եմ, երբ նվերը ստացա և ոտանավորն արտասանեցի, Ձմեռ պապին ինձ համբուրեց, և նրա շրթերը սառույցի նման սառը չէին, որ այն ժամանակ ինձ շատ զարմացրեց:

— Ձմեռ պապին շտապում էր, բալի՛կ: Նա դեռ ուրիշ տեղեր պիտի գնա, ուրիշ երեխաներ են սպասում նրան:

Մուտքի մոտ «քեռին» զնգեց կտրոնը, մեզ՝ հայր ու որդուս մի խուզարկու հայացք նետելով, մեկնեց ցելոֆանե տոպրակը: Ամաչելով վերցրի, ժպտացի և երեխայի ձեռքը ցավացնելով՝ քարշ տվի իմ ետևից: Դրսում մենք նայեցինք նվերները. մի քանի «Տուզիկ», չորս-հինգ «Կոկակրեմ», «Լուսակիր», մեղրաբլիթ...

Հիմա տանն ենք: Երեխան կրկին բացում է տոպրակը, ու ես չեմ ուզում նայել նրա դեմքին: Ինչպես խելքս չկտրեց ուրիշների նման նախօրոք խանութից որևէ բան վերցնել ու դնել գրպանս: Ես տեսա, որ մուտքի մոտ շատ հայրեր նվերը հանում էին իրենց գրպաններից: Երեխաս էլ տեսավ ու հարցրեց. «Ինչո՞ւ իմը... Նրանցը... » «Արդեն ուշ է,— հառաչեցի ես,— մնաց հաջորդ տարի: Տե՛ս մյուս Ձմեռ պապին քեզ համար ինչ նվեր է ուղարկելու»: «Որտեղի՞ց գիտես»,— հարցրեց նա: Ես չասացի՝ որտեղից, որովհետև երեխան չէր հասկանա: Միայն ասացի. «Արդեն գիտեմ»: Եվ նա ինձ հավատաց:

Երեխան տնտղեց կոնֆետները, ապա մի կողմ դրեց ու ասաց.

— Ձմեռ պապին մի օր է ապրում: Այդքան ծեր,— ասաց նա թերահավատությամբ,— չէ՞, շատ չի ապրի:

— Բավակա՛ն է,— գոռացի ես,— թքած, թե մեռնում է: Ի՞նչ ես գլուխդ գցել, անընդհատ կըրկնում:

Նա լաց եղավ, որովհետև ես նրան վախեցրի: Ա՜յ քեզ Նոր տարի, տոնածառ, Ձմեռ պապի, ուրախություն, նվեր... Ես մաքրեցի նրա արցունքներն ու ասացի.

— Ձմեռ պապին չի մեռնում: Ես վաղը քեզ կըտանեմ նրա մոտ: Վաղը:

— Վա՞ղը:

— Այո՛: Դու կտեսնես, որ բոլոր Ձմեռ պապիները չեն մեռնում: Մի քանիսը մնում են: Լավերը: Իսկ մնացածները չեն մեռնում, հալվում են: Այո՛, հալվում են,— քիչ մտածելուց հետո շարունակեցի ես,— հալվում են, ջուր են դառնում: Չեն մեռնում, էլ չասես: Լսեցի՞ր:

Նա ասաց՝ այո: Բայց ես հասկացա, որ նա այժմ ուղղակի ինձանից վախենում է:

Մյուս օրը ես նրան տարա քաղաքային զբոսայգի: Ճանապարհին տաքսու մեջ մի Ձմեռ պապի տեսանք: Երեխան զարմացած բացականչեց.

— Ձմեռ պապի՜ն...

Ձմեռ պապին լսեց, որովհետև մենք շատ մոտիկ էինք կանգնած: Ժպտաց, և մենք տեսանք, որ նա բեղերը դեռ չի կպցրել:

— Նա արդեն հալվում է,— հառաչեց երեխան:

Այգում մեծ տոնածառ էին դրել, ու երեխաները արդեն ձեռք-ձեռքի տված պարում էին: Տոնածառի ետևից դուրս եկավ Ձմեռ պապին՝ սպիտակ ձեռնափայտով, կարմիր քթով, քուրքը հագին, գդակը գըլխին:

Երեխայի տարակուսանքն իսկույն ցրվեց: Նորից նա պայծառացած սկսեց պարել ու երգել մյուսների հետ: Մինչ Ձմեռ պապին հանելուկներ էր ասում, երգեր էր սովորեցնում, պարում, կատակում՝ ես հեռու քաշվեցի, նստեցի իրենց երեխաներին սպասող մյուս հայրիկների ու մայրիկների մոտ ու հանեցի թերթը:

— Պապա՛:

Գլուխս բարձրացրի.

— Ինչո՞ւ ես եկել: Գնա պարի՛ր, տեսնում ես՝ բոլորը պարում են:

— Պապա՛, նայի՛ր,— ու նա դեմքով շրջվեց դեպի տոնածառը:

Ձմեռ պապին երեխաների ձեռքը բռնած՝ կաղալով պտտվում էր նրանց հետ: Ոչ շատ ծեր, բայց արդեն տարիքն առած մի մարդ էր:

— Ինչո՞ւ է... նա...

— Միշտ հարցեր ես տալիս,— բարկացա ես:— Գնա՛ և պարիր: Ես քեզ բերել եմ, որ պարես: Գնա՛:

Երեխան գնաց, միացավ պարողներին: Բայց նա այլևս չէր պարում, շարունակ նայում էր կաղացող Ձմեռ պապիին, ետ էր մնում, խանգարում բոլորին: Ես կանչեցի նրան, երբ մոտեցավ, ասացի.

— Դու ինչո՞ւ չես պարում, խանգարում ես բոլորին:

— Նա հալվում է...

— Նա չի հալվում: Նա մարդ է, ինչպե՞ս կարող է մարդը հալվել: Նա կաղ է:

— Ինչո՞ւ է կաղ:

— Նա...

Ես հառաչեցի, նայեցի շուրջս: Կողքիս նստած մարդը ժպտաց.

— Իմս էլ է հարցնում՝ ինչո՞ւ է կաղում:

— Ի՞նչ ասացիք,— հարցրի ես:

— Ասացի՝ չգիտեմ:

— Երեխային չի կարելի ասել՝ չգիտեմ,— միջամտեց ակնոցավոր մեկ ուրիշը:

— Գնա պարի՛ր,— ասացի ես երեխային:— Ձմեռ պապին էլ մարդ է, բալի՛կ: Հիմա իմացա՞ր: Նա էլ մեզ նման մարդ է:

— Կարիք չկա ասել, որ նա էլ մեզ նման մարդ է: Կարիք չկա,— ասաց ակնոցավոր անծանոթը:— Ուրիշ բան ասեք, կհավատա: Ես ասում եմ՝ Ձմեռ պապին ձյան հետ երկնքից է իջնում:

Ես պատահական առիթով փոխեցի տեղս ու երեխային ուղարկեցի պարելու:

— Մաէ՛ստրո,— դեպի երաժիշտները դառնալով, ասաց Ձմեռ պապին,— «Սիրունիկ»:

Մաեստրոն ծանրորեն բարձրացավ տեղից, շրջվեց դեպի նվագախումբը... Ապա բարձրացրեց ձեռքը և առանց ձեռնոցը հանելու սկսեց չափ տալ:

— Չորս տակտով,— ասաց նա,— ի...

Փողային նվագախումբը հնչեցրեց «Սիրունիկ»:

— Գնա՛,— ասացի ես:

— Ես «Սիրունիկ» չեմ պարում,— ասաց երեխան,— ես «Լեզգինկա» եմ պարում:

Իսկ կաղ Ձմեռ պապին պարում էր ու երգում.

— Տրալալա՜-մե՛կ, տրալալա՜-երկու՛: Տրալալա՜-մե՛կ, տրալալա՜-երկո՛ւ...

Պարից հետո երեխաները ծափահարեցին, իսկ նվագախմբի անդամները գործիքները էստրադայի վրա թողնելով՝ իջան անցան ծառի ետևը, մի քանի քայլ հեռու:

— Այն ի՞նչն է՝ այնինչը,— երեխաներին իր շուրջը հավաքելով, բարձրաձայն հայտարարում էր Ձմեռ պապին:— Բերան չունի փչում է...

— Քա...մի՜...ն,— աղաղակեցին երեխաները:

— Իսկ այն ի՞նչն է՝ այնինչը... Աման ունեմ մի պուճուր...

Երբ Ձմեռ պապին ոգևորված դարձավ դեպի էստրադա և գոչեց՝ «Մաէ՜ստրո», ծառերի ետևում կանգնած էր մաեստրոն՝ օղու շիշը ձեռքին...

— Գնանք,— երեխայի ձեռքը ցավացնելով՝ քաշ տվի իմ ետևից:

Կիսաճանապարհին նվագախումբը սկսեց նվագել:

— Ի՞նչ են նվագում,— հարցրի ես:

— «Լեզգինկա»:

— Դու ուզում էիր ա՞յդ պարը պարել:

Երեխան գլխով արեց:

— Պարի՛ր, այստե՛ղ պարիր, գնանք:

Երեխան սկսեց պարել: Միայնակ պարում էր ճանապարհին, իսկ ես մի կողմ քաշվեցի՝ մինչև վերջացներ, թերթ էի կարդում: Տոնածառի կողմից երաժշտությունը լավ լսվում էր: Երեխան որտեղ պետք էր՝ ծափ էր տալիս, և նույն ժամանակ տոնածառի մոտ էլ էին ծափ տալիս: Կքում էր՝ որտեղ պետք էր, բացականչում «ասե՜», տոնածառի մոտից էլ կանչում էին «ասե՜...» Պարը վերջացնելուց հետո եկավ ու բռնեց իմ ձեռքը: Նայեց աչքերիս, հանգստություն կար աչքերում:

— Իսկ նվե՞րը,— ասաց նա:

Ես նոր հիշեցի, ձեռքով շոշափեցի գրպանս. ժպտացի.

— Մոռացանք,— ուրախ ասացի ես,— գնանք նվերը ստանանք:

— Սա լավ Ձմեռ պապի է, չէ՞,— ճանապարհին ոգևորված խոսում էր երեխան:

Մենք հասանք այն պահին, երբ Ձմեռ պապին զվարթ ձայնով մաեստրոյին հրավիրում էր նվագել վերջին, հրաժեշտի նվագը: Ծանր զգացումով կանգ առա:





## ՀԱՆԴԻՊՈՒՄ

*ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Դուրսը ձմեռ, ձյուն է ու ցուրտ,
Վառարանում՝ թույլ մի կրակ,
Մոսկվայի տակ,
Թեկուզ՝ պալատ, Բայց մի ամրոց,
Հիմա՝ մանկա մի որբանոց,
Երեխաներ,
Որ աշխարհում որբ մնացին,
Ռուս, բելոռուս, ուկրաինացի,
Դեռ կռվում են հայրերն իրենց,
Եվ սովն ամեն
Քանի՜-քանի տուն ավերեց...
 Տոն է, սակայն,
Որբանոցում մերձմոսկովյան,
Չէ՞ որ Լենինն ինքն է գալու
 Տեսակցության:
Հին են թեկուզ շորերն իրենց,
Ննջարանները աղքատ ու խեղճ,
Բայց թնդում է ուրախ լույրը

— Երեխանե՛ր,— հրաժեշտի ժամանակ ասաց Ձմեռ պապին,— չմոռանաք, ամսի տասին Ձմեռ պապին հրաժեշտ է տալու՝ մինչև հաջորդ տարի: Գիշերվա ժամը ուղիղ տասներկուսին Ձմեռ պապին պիտի գնա, ուղիղ տասներկուսին: Չմոռանաք, կգաք հրաժեշտի: Իսկ հիմա... մաե՛ստրո...— Ձմեռ պապին լուռ նայում էր դատարկ էստրադային. երաժիշտները գնացել էին:

— Ցտեսությո՜ւն, երեխանե՛ր, ցտեսությո՜ւն...

— Իսկ նվե՞րը,— ասաց երեխան:

— Նալիր գրպա՛նդ, գրպա՛նդ...

Մենք երկուսով շատ ուրախացանք Ձմեռ պապի նվերը տեսնելով: Ա՜յ քեզ խորամանկ Ձմեռ պապի, լավ Ձմեռ պապի, բարի Ձմեռ պապի...

— Ինչո՞ւ էր կաղ...

— Ա՜յ քեզ խորամանկ Ձմեռ պապի...

— Ինչո՞ւ էր կաղ...

Տանը երեխան պատմում էր դեպքի մասին: Հետո ավելացրեց.

— Պատերազմ է եղել, Ձմեռ պապիները կռվել են երեխաների համար, ոտքը կաղ է մնացել: Բա՜...

Կինս նայեց ինձ, և ես ձեռքս թափ տվի, իբր՝ թող:

Հունվարի տասին պատահաբար հիշեցի Ձմեռ պապի վերջին խոսքերը հրաժեշտի մասին: Աշխատանքի տեղը պատմեցի՝ ուշադրություն դարձնող չեղավ: Շատ վատ եղանակ էր, բարեկամիս տնից էի վերադառնում, ուշ էր, տասներկուսին մոտ: Ինքս ինձ վրա ծիծաղելով՝ քաղաքային այգու մոտ ավտոբուսից իջա: Այգին դատարկ էր. ոչ մի մարդ: Քամին ձյուն էր արծարծում այգով մեկ: Բայց ես գնացի մինչև տոնածառը: Ինքս էլ չիմանալով ինչ եմ անում՝ որոշեցի ետ դառնալ, երբ գույնզգույն լույսերով ողողված տոնածառի տակ նկատեցի Ձմեռ պապին: Ոչ ոք չէր եկել հրաժեշտի, այդ բքին տնից ո՞վ դուրս կգար, միայնակ էր: Ներկած դեմքով, քուրքը հագին, ծառի տակ կուչ եկած: Ծերունական իր մրտքերն էր անում: Ես մնացի հեռվում, չհամարձակվեցի մոտենալ, թաքնվեցի խաղալիքների կրպակի ետևում: Տոնածառի գույնզգույն լույսերը քամուց տատանվում էին... ժամը տասներկուսի մոտ Ձմեռ պապին նայեց





# ԻԼՅԻՉԻ ՀԵՏ

Նկ. ԷԼԵՆԱ ՄԻՐԶԱ-ԱՎԱԳՅԱՆԻ

Նրանց զվարթ սրտերի մեջ:
—Եկա՜վ, եկա՜վ...—
Երբ ավտոյից
Իջավ Իլյիչն արագաքայլ,
Թնդաց ուռան,
Եվ Իլյիչին
Պիոներները մեջտեղ առան...
—Լենի՜ն, Լենի՜ն...
—Բալիկնե՜ր իմ, լավիկնե՜ր իմ,—
Ողջունում էր Իլյիչն ուրախ,—
—Բարև՜, չեկի՛կ,
Եվ քե՜զ բարև,—
Օ՜, բոլորին
Նա կուզենար իր գիրկն առնել:
Եվ Իլյիչի պատվին այնտեղ
Բոցավառվեց մի թեժ խարույկ:
Երգում էին.
«Հանուն երկրի սովետների»,

Երգում էին խրոխտ ու խենթ,
Ու երգում էր Իլյիչն ինքը
Բոլորի հետ...
Կարմիր վզկապ բերին նրան,
Փոքրիկ ու վարժ իր ձեռքերով
Կապեց իսկույն չեկլիկ տղան:
Շատ էր սազում դա Իլյիչին:
—Մեր առաջին
Ամենամեծ ուսուցիչին:
—Շնորհակալ եմ,— Լենինն ասաց,—
Այն կաշխատեմ պատվով կրել:
Երբ թշնամուց մաքրենք մի օր
Երկիրը մեր,
Այն ժամանակ պիտի ծաղկի
Հողը ազատ,
Ձեր ձեռքերով պիտի ծաղկի,
Ձեր սրտերով երիտասարդ...
—Մի՜շտ միասին,—

Թնդաց նորից հզոր ուռան
Եվ խարույկից հազարագույն
Կայծեր թռան...
Մերձմոսկովյան խոր անտառում,
Մինչև այսօր այն կայծերից
Վառվում է մի անմար խարույկ...



ժամացույցին, դուրս եկավ տոնածառի տակից, դանդաղ կաղալով պտտվեց, նորից կանգնեց, նայեց տոնածառի գագաթին շողին տվող աստղին ու գնաց: Ուղիղ տասներկուսն էր. հրապարակի կուրանտները խփում էին: Այգում ոչ մի մարդ չկար: Ես նայում էի նրա ետևից, մինչև անհետացավ:

Ես գիտեի, որ նրա շրթերը տաք են, ես դեռ հիշում եմ...

Սակայն առաջին անգամ էի տեսնում՝ ինչպես է հեռանում Ձմեռ պապին: Դա տեղի է ունենում գիշերվա ուղիղ տասներկուսին, նա վերջին անգամ պտտվում է տոնածառի շուրջը, նայում ամենաբարձր աստղին ու գնում: Մինչև հաջորդ տարի: Իսկ թե ինչ է մտածում նա այդ պահին՝ դժվար է ասել:

Միայն ես կցանկանայի նրան կրկին տեսնել, մի տարի անց, նորից մի տարի անց, նորից մի տարի անց... Որովհետև ես էլ սկսեցի մտածել, թե իսկական Ձմեռ պապիներ այնքան էլ շատ չեն մնացել:

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ



# ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ ՀԻՆ ԼԵՌՆԵՐ

ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Դասախոսը շարժվեց, ուսանողուհիները գնացին, և ես գնացի:

Դա վերջացած պատմություն էր: Քառանց մի քիչ կաղ, մի քիչ շեկ, մի քիչ չեչոտ, աչքի բիբը սպիտակ Վանին մնացել էր էն հեռու ժամանակներում՝ իր ծղոտոցի և ուրիշների կանչերի մեջ, և բերվել, մահճակալի մեջ ծածկոցի տակ էր դրվել մի գիրկ այն նյութերից, ինչերից որ ստեղծված էր բերանը կիսաբաց ու աչքը կկոցած Քառանց Վանին, բայց դա Քառանց Վանին չէր, Քառանց Վանին մնացել էր էն հեռո՜ւ... Դա երեկ գիշերվա կրակը չէր, դա կրակատեղի այսօրվա մի բուռ մոխիրն էր:

Այդ գորշ ծածկոցի վրայով (ես այդ պահին հիշում էի ուրթի մոտ խոտերի մեջ ընկած յափնջին, որի տակ շան լակոտներ էին խլրտում)... պրոֆեսորը նայում էր ինձ այդ գորշ ծածկոցի վրայով, ես նայում էի պրոֆեսորին և սպասում, որ նա հիմա կասի՝ «ամեն ինչ կանենք», բայց նա միայն նայում էր, և ես սպասում էի, թե հիմա-հիմա ասելու է՝ «Դժվար է, բայց կբուժենք», սակայն նա չէր ասում, այդ գորշ ծածկոցի վրայով նայում էր ինձ, ես նայում էի նրան, և նա չէր ասում՝ «Գոնե մի քանի օր շուտ բերեիք»:

Սպիտակ հագած ուսանողուհիները եկան, դասախոսի հետ կանգնեցին մահճակալի դեմ:

— Քեզ համար տես ի՜նչ աղջիկներ են եկել, Վանի՜,— ասաց պրոֆեսորը, և այդքանը կարող էի ես էլ ասել:

— Վանի Քառյան Ստեփանի,— ուսանողուհիների համար ասաց պրոֆեսորը,— հովիվ, քառասուն տարեկան, ամուսնացած, չորս երեխայի հայր, կրթությունը՝ քառամյա, Թումանյանի շրջանի Ահնիձոր գյուղացի,— վերջացրեց պրոֆեսորը, և այդքանը ես էլ կասեի: Այդքանը Թի Ջավենն էլ կասեր: Եթե արտասուքը չխեղդեր՝ Զարիկն էլ կասեր: Այդքանն այստեղի՝ ապրողներիս աշխարհի բաներն էին, և բոլորս էլ գիտեինք: Իսկ որ պատի ետևում Հրեշը մարդ էր լափում... Պրոֆեսորը նայում էր դասախոսին, դասախոսը նայում էր պրոֆեսորին, և նրանք ուսանողուհիներին ու միմյանց բան չէին ասում այն մասին, թե ինչ է կատարվում գորշ ծածկոցի տակ: Պրոֆեսորը բռնեց նրա ձեռքը, պահեց նրա ձեռքն իր մատների մեջ, և այդ ժամանակ ինձ թըվում էր, թե պրոֆեսորը մի բան է վճռում, հետո դըրեց մոխրագույն այդ ձեռքը ծածկոցին, բայց ոչինչ էլ չէր վճռել, միջամատով միայն կամացուկ ծեծում էր մոխրագույն այդ ձեռքը և ասաց հենց այնպես առանց հարցի.

— Ո՞նց ես, Վանի՛:

Ուշ և թույլ, համարյա թե անլսելի, եկավ պատասխանը, այնքան անլսելի, որ ինձ թվաց, թե իմ ներսում ես եմ ասել՝ «լավ եմ», և որովհետև պրոֆեսորը մոխրագույն այդ ձեռքը դեռ բռնած էր և միջամատի ծայրով կամացուկ ծեծում էր այդ ձեռքը, ինձ թվաց, թե պրոֆեսորը նրա հետ խոսում է մորզեով, իսկ նա գտնվում է այդ գորշ ծածկոցի տակ, այդ մոխրագույն մարմնի ծանր խորքերում, և մեր ձայները չեն հասնում նրան, աղջիկների հրրճվանքը չի հասնում նրան, և պրոֆեսորը նրա հետ խոսում է մորզեով:

— Հիշո՞ւմ ես, Վանի՛, որ քեզ համար շներ գողացա,— ասացի ես,— որ տերը... որ Ասատուրը... որ էծերը՝ իծանը...

Պրոֆեսորի մատների մեջ նրա ձեռքը կարծես թե շարժվեց, հետո ծածկոցի տակից եկավ նրա ձայնը.

— Շները ոռնում են:

---

*Սկիզբը՝ 1974 թ. № № 10, 11, 12*

— Քեզ համար տես ի՜նչ աղջիկներ են եկել,— ասացի ես:

Աղջիկների հրճվանքը նրա մեջ չէր ալեկոծվում: Նրա միջի Հրեշը կլլում էր այդ հրճվանքը:

— Շները ոռնում են,— ասաց նա, և պրոֆեսորը մատների ծայրով տկտկացրեց նրա ձեռքը:

— «Վանի՜, խի՞ ես էդքան լավը:— Լավը չեմ»,— հիշեցրի ես,— որ Արտեմ քեռին փչում էր... որ Աստուրի մեղալները պսպղում էին... «Մայո՜ր»:

Սարերի կանչերը նրա մեջ, սակայն, չէին զրնգում: Հրեշը կլլում էր այդ կանչերը:

— Ոչի՜նչ,— ասացի ես,— պրոֆեսորը հիմա մի լավ սրսկում կանի՝ վեր կկենաս, կգնանք սարերը: Խոսք տուր, որ պրոֆեսորի համար մի ոչխար ես մորթելու: «Թուրքի բե՞կ եմ, խա՞ն եմ»:

Պրոֆեսորը նայեց ինձ, և ես հասկացա, որ Հրեշը կլափի սրսկումը նույնպես: Հետո ինձ ասացին, որ նրա շները ոռնալ էին սկսել այդ պահից: Փողոցում լռություն էր, հիվանդասրահում լռություն էր, իսկ նրա ներսում, ինչպես ջրի տակ, և իր լռության մեջ նա լսում էր շների ոռնոցը: Դա վերջացած պատմություն էր: Մի քիչ ազոտի, մի քիչ երկաթի, մի քիչ կրի այն փուխր միացությունը, որ կոչվում է մարդկային կյանք, քայքայվել էր, մնացել էր ազոտի, երկաթի, կրի մի փոքրիկ կույտ, և... շները ոռնում էին ավերակների վրա:

— Տարօրինակ է,— ասացի ես պրոֆեսորին,— Հրեշը չի թողնում, որ խեղճ տղան վերցնի աղջիկների հրճվանքը, ուտելիքի հրճվանքը, Հրեշը լափում է խեղճ տղային, բայց չէ՞ որ, պրոֆե՛սոր, տղայի մահով Հրեշն էլ է վերջանալու, ուրեմն ինչո՞ւ է, պրոֆե՛սոր, Հրեշը ոչնչացնում իրեն իրեն:

Նա ուրախ էր, որ այդ հիվանդության անունը ես չեմ տալիս: Նա վախենում էր այդ հիվանդությունից:

— Գիտե՞ք ինչ հովիվ էր, գիտե՞ք ինչ կատակներ էր անում, գիտե՞ք սիրտն ինչքան էր բարի,— ասացի ես,— հրճվանքը մեջը չէր տեղավորվում, բաժանում էր ամբողջ ուրթին: Եթե այդ հրճվանքից հիմա մի քիչ...

— Ռեհանի բույրը քեզանի՞ց է գալիս,— ասաց պրոֆեսորը:

Իմ բաճկոնից էր գալիս ռեհանի բույրը, և մենք խոսեցինք արևոտ այգիների, ծովափի, ֆուտբոլի, արբանյակների հանդարտ սահքի, բասկետբոլային կանանց բարձրահասակ խմբի մասին, որոնք եկել են մրցումների և պայուսակները ճոճելով՝ երեկոյի մեջ թրև են գալիս, և այն մասին, որ անբացատրելիորեն հաճելի է, երբ անձրևի տակ մեքենայով ճանապարհ ես գնում, լուռ ես և մաքրիչները դեմի ապակին մաքրում են... և դժվար էր անդրադառնալ, որ ներքևում ինձ սպասում են: Եվ մենք դարձյալ խոսեցինք ֆուտբոլային կանաչ դաշտի և աջ եզրայինի կտրուկ սլացքի մասին:

— Տա՛ր՝ թող քնեն, հանգստանան, հետո կհայտնես,— ասաց պրոֆեսորը:— Հետո կսրսկենք՝ գուցե թե գյուղ հասնի:

— Սևանով-Դիլիջանով-Դսեղով հինգ ժամվա ճանապարհ է, պրոֆե՛սոր,— ասացի ես:

Նա ակնոցի տակ տրորեց ակնադրյուրները և ասաց, որ ուրախ է ինձ ողջ-առողջ տեսնելու համար:

— Յասամանի թեթև բույր է գալիս,— ասաց նա,— թե՞ ռեհանի:

Իջնելիս՝ ես հանկարծ հասկացա, որ, ընդհակառակը, հարկավոր է հիմա հայտնել, քանի դեռ այդպես քնատ են, այդպես լավ չեն հասկանում, այդպես շշմած են և ցավն իրենց մարմնին առնելու ուժ չունեն:

Ջարիկը բերանը լուռ շարժեց ու ընկավ իր կապոցի մոտ, կարծես թե կախիչից վերարկու ընկավ, բերանը կիսաբաց՝ Ջավենը ժպտաց ու մնաց այդպես ժպտալով: Ծխելով՝ ես նայում էի Նորքի արևոտ այգիներին և հիշում էի ամայության մեջ յափնջու մոտ ընկած կարմիր գամփռին, կարծես թե ես էի տեսել:

— Դե լավ, դուք ողջ լինեք, վե՛ր կաց,— ասացի ես:

— Տղեղ ո՞նց է, որ շաղոտ իրիկվա մեջ սպիտակ՝ վազում էր,— ասացի ես:

— Մարդիկ նայում են, ամոթ է, վե՛ր կաց,— ասացի ես:

— Ասա՞՝ թող վեր կենա, Ջավե՛ն,— ասացի ես:

— Վե՛ր կաց,— ասացի ես,— քեզ եմ սպասում, գիշերը չեմ քնել:

Այս մարդիկ կարողանում են իրենց վիշտը ենթարկել ուրիշի կարիքին: Նա սկսեց բարձրանալ, բայց նորից փլվեց:

— Գիշերը չի քնել,— ասաց Ջավենը,— վե՛ր կաց:

Եվ նա վեր կացավ: Տաքսու մեջ նա ուռչում ու ուռչում էր, նա հիմա փղձկալու էր, բայց ծպտուը կուլ տվեց և թուխ, նիհար ու կճռոտ՝ սկսեց դուրս նայել: Այդ օտար քաղաքում, օտար մարդկանց մեջ նա իրեն իրավունք չէր տալիս իր վշտով պղտորելու ուրիշների զգացուն հրճվանքը: Ես միացրի տաք ջուրը և նրան հրեցի լողասենյակ, քաղաքաբնակի իմ կամքին նա չհակառակվեց: Ես մտածում էի, որ ցնցուղի վշշոցի ու գազավառի աղմուկի մեջ նա կարող է արտասվել սրտի ուզածի չափ, բայց այդ ուրիշի փայլուն սպիտակ լողասենյակում նա իրեն իրավունք չըտվեց ոռնալ գեղջկուհու իր լացը: Նա այնտեղ օճառվեց, և տաք ցնցուղը հաճելի էր, և օճառվելով տեսավ, որ Վանին մեռնում է, բայց Վանին է մեռնում, իսկ սրանք իր ոտքերն են, իր փորն է, և օճա-

ողն ու տաք ջուրը հաճելի են, իր թևերն են, իր վիզըն է... իր երեխաներն են, և ինքը կթվորուհի է և պետք է աշխատի հիմա երկու հոգու փոխարեն:

— Աշխարը հիմա մենակ ո՞նց ես պահելու,— ասացի Զավենին:

Թե իր ներսում իր Վանու մասին ինչ կար՝ նա ինձ բան չասաց:

— Մեր գործը հեշտ է,— բազկաթոռի եզրին դիք նստած՝ ասաց նա,— ձեզանի՛ց պատմիր:

— Ո՞ւմ ես ընկեր վերցնելու:

— Ղեկավարությունն ում որ տա:

— Ոչ ոք Վանի չի դառնա,— ասացի ես:

— Ոչինչ,— ասաց նա,— ոչխար է, էլի, կպահենք, դու ձեզանի՛ց պատմիր:

Զարիկն այնտեղ ցնցուղը փակել էր, բայց լողասենյակից չէր ելնում: Մի քիչ մտածելով՝ ես հասկացա, որ նա իրեն իրավունք չի տալիս գեղջկուհու իր մարմինը սրբել քաղաքացու մեր ցամքոցով և այդպես կանգնած սպասում է չորանալու: Ես լողասենյակի դուռը ծեծեցի և ասացի, որ այնտեղ սրբիչներ կան, և նա շտապ վիզն անցըրեց գեղջկուհու իր զգեստը, որովհետև կարելի էր թաց-թաց հագնվել, բայց չէր կարելի ցամաքելու սպասել և ուրիշներին մտածել տալ, թե ինքը այդ լռության մեջ, մերկ, կանգնած է ցամաքելու:

Երբ սենյակ եկա՝ Զավենը նիրհում էր բազկաթոռի եզրին դիք նստած, նրա մեջքը ծալվում ու գլուխը հակվում էր կրծքին: Բայց նրանք չքնեցին. բազկաթոռի եզրին և բազմոցի եզրին իրար դեմ նստած՝ նրանք կերան իրենց պանիրը, հացը, խաշած ձուն՝ իրենց աղով, բերանները հագիվ հպելով՝ ուղղակի եզրից մի-մի բաժակ թեյ խմեցին մեր բաժակներով, հետո Զարիկը լվաց այդ բաժակները, ինչպես բացել էին, այդպես էլ տեղը-տեղին հավաքեցին իրենց սփռոցը մեր սեղանի վրայից և վեր կացան.

— Գնացինք:

— Քնեք հանգստանանք՝ հետո:

— Չէ, մենակ՝ ավտոբուսը որտեղ է կանգնում՝ չգիտենք:

— Ծանր օր է սպասվում, քնենք հանգստանանք,— ասացի ես:

— Գործի տեր ենք,— ասաց Զավենը,—գնացինք:

Ավտոբուսն ուշ շարժվեց, և այդ շոգի մեջ նրանց քունը տանում էր: Զավենի գլուխը հակվում էր կրծքին, ուղիղ նստած Զարիկն անթարթ նայում էր ու չէր տեսնում: Դրսից՝ ձեռքի և գլխի շարժումներով, ես Զավենին հասկացրի, որ իր քունը տանում է: Նա հասկացա՞վ, չհասկացա՞վ՝ ժպտաց և գլխով արեց: Ավտոբուսը շարժվեց, ես շուռ եկա՝ տուն գնալու և որտեղից-որտեղ ասացի.

Որ սարից փախած սոված շները
Կտերը պիտի ոռնան, կլանչեն...

Եվ նորից.

Որ սարից փախած սոված շները
Կտերը պիտի ոռնան, կլանչեն...

Երբ քնից արթնացա՝ ռեհանի բույրը թրթռաց իմ ռունգերում, և իմ մարմնի մեջ խաղաց ոտից գլուխ իմ առողջության հրճվանքը, և մաքուր սպիտակեղենի, և կիպ մայկայի, և պինդ մկաններիս ու սառը ջրի... ժպտալով՝ ես մեծ, մաքուր հայելու դեմ սկսեցի սրբվել և ասացի ինքս ինձ.

Որ սարի սովոր Սարոյի նանը
Էլ սար չի գնա, Սարո չի կանչի,
Որ սարից փախած սոված շները
Կտերը պիտի ոռնան, կլանչեն...

Ես տաքսի նստեցի՝ գնալու օդանավակայան, բայց գնացի Խոցերի հիվանդանոց: Դուրսը մայթին ոչ ոք չկար: Սրահում մարդ չկար, միայն փայլուն ֆիկուսն էր: Նրա անկողինը դատարկ էր, գորշ ծածկոցին հիմա մաքուր սպիտակ նոր բարձ էր դրված: Պրոֆեսորն աշխատասենյակում չէր: Աղբի ցանցը նրա գրասեղանի մոտ դատարկ էր և գրասեղանի ապակին՝ սրբված: «Տուն են գնացել»,— ասաց միջանցքի հավաքարարը: Հյուրանոցի մոտով, որ պատերազմից հետո է կառուցվել, ես մեքենան քշել տվեցի օդանավակայան, բայց, իհարկե, արդեն ուշ էր. գերմանուհին արդեն օդում էր, և նրա տակ մի բուռ Սևանն էր, երևացող-չերևացող խճուղին և մանրիկ, բզեզի չափ ավտոմեքենաները, և նրա դեմ ու տակ Ահնիձորի մեր բաց սարերն էին, և օդանավի աղմուկը հավասարապես մաղվում էր Սևանի, սարերի, ավտոմեքենաների վրա, որոնցից մեկի մեջ Զարիկն ու Զավենը փոխնփոխ ասում էին Վանուն.

— Հիմա քո սարերը կերևան:

— Մի քիչ էլ համբերիր՝ քո սարերը կերևան:

— Հենց որ սարերը տեսնես՝ ցավը քո միջից կանցնի:

— Ա՛յ, հիմա-հիմա կտեսնես:

Ձեռքները նրա մեջքի տակ, նրա գլխի ու վզի տակ, նրա կողքերին պահած, ուսերը նրա թևերի տակ՝ նրանք նրան անել էին.

— Ա՛յ էն բլուրն էլ դեմներիցս անցնի...

— Շան ոռնոց եմ լսում,— ասել էր նա,— շներ են ոռնում:

— Դե՛, տղամա՛րդ եղիր,— ասել էր Զավենը:

— Ինքնաթիռ է, նրա ձենն է, շները չեն ոռնում,— ասել էր Զարիկը:

— Սարերն ինքնաթիռից երևում են,— ասել էր Զավենը,— հիմա մենք էլ կտեսնենք: Շները,— ասել էր Զավենը,— ուրթը,— ասել էր Զավենը,— Շիշթափը...

— Տեսա,— վիզը ձգել ու պառել էր Վանին,— էլ չի ցավում:

— Գառնաքարը,— ասել էր Զավենը,— կարմիր

կակաչների խումբը ոնց որ դպրոցական աղջկերք լինեն,— ասել էր Զավենը,— միտդ ա՞, որ ասի՝ «Վանի, փախի, պսակում են»... ձորի անտառները,— ասել էր Զավենը,— ձորի անտառներում իմ ու քո անունը հազար տեղ դու ես գրել, հազար տեղ՝ ես, բայց ների դու ինձանից լավ ես նկարում։

Վ. Ք. մի արև օր
Զ. Թ. 1949

«Մե՛ր, ա՛յ մեր, հետո ի՞նչ եղավ»։ «Ձորի մեջ կարծես մարդ չկար։ Զավենը շորի պես ծալվում էր, քնի՛ր, քնի՛ր»։ «Մե՛ր, ա՛յ մեր, բա Զարի՞կը»։ «Զարիկը չկարողացավ լաց լինել, երկու անգամ նվաղեց՝ զոռով ուշքի բերինք։ Ուշքի բերինք ու խնդրեցինք լաց լինի, որ չնվաղի, բայց չկարողացավ լաց լինել խեղճ Զարիկը, նորից նվաղեց։ Հետո գերեզմանոցից հանեցինք, մազերը սանրեցինք, գլխաշորը կսապեցինք, դույլը ձեռը տվինք, գնաց ֆերմա, կթի, կըթվոր է... Աշխարհը մեծ է, քնի՛ր, քնի՛ր»։ «Մե՛ր, ա՛յ մեր, էն ի՞նչ ձեներ են գալիս»։ «Շների, քնի՛ր, քընի՛ր»։ «Իսկ հե՞րը, ա՛յ մեր»։ «Հե՞րը... զոհված մեծ տղայի վրա հերը տարիների հետ, տարիների հետ երգ էր կապել, հետո տղան, որ էդպես մնաց ռուսաստանների ու գերմանիաների անհայտություններում, հերը մեծ տղայի երգը Վանու վրա երգեց. տխուր, երկար, ահալի երգ էր, կարծես փոքր լինեիր, մութ լիներ ու քամին վառարանի մեջ երգեր, բայց ծեր է, ատամ չունի, լավ չէր երգում՝ ժողովուրդը դժգոհեց, երեխեքը թաքուն ծիծաղում էին»։ «Մե՛ր, ա՛յ մեր, իսկ Դանելանց Արտեմ քեռին չնըվագե՞ց, ա՛յ մեր, չնվագե՞ց Արտեմ քեռին»։ «Արտեմը նվագո՞ւմ է որ»։ «Բա չես հիշո՞ւմ, ա՛յ մեր, որ սարում նվագում էր»։ «Սարում նվագում էր, հիմա չի նվագում. շրթունքները մաշվել են, թոքերը մաշվել են, քնի՛ր, քնի՛ր, կյանքը գնում է, մեծերը գնում են, երեխաները գալիս են, ոչ մեկը չի ուզում հովիվ լինել, ոչ մեկը Վանի չի դառնա, քնի՛ր, քնի՛ր»։ «Իսկ Վանու երեխե՞քը, ա՛յ մեր»։ «Քնի՛ր, քնի՛ր, վիշտը երեխաների համար չի, տղան ձորում ֆուտբոլ էր խաղում տղաների հետ, աղջիկն աղջիկների հետ՝ տապկնոցի, տարիների, տարիների հետ է վիշտը մտնում մարդու մեջ, քնի՛ր, քնի՛ր»։ «Մե՛ր, ա՛յ մեր, էն ո՞վ է կանչում»։

Նա ականջ դրեց, ես ականջ դրեցի, և դա մարդկային ձայն չէր, շների հեռավոր աղիողորմ էր, ասես հեռու միջնադարից էր գալիս, Թամուրլանգն ասես անցել ու հանգցրել էր գյուղը, և շունը լուսնի տակ լաց էր լինում հանգած գյուղի վրա—ավու՜ուու՜ւու՜ւու՜ւ... ավո՜ւու՜ու՜ւ... և հեծյալ օզբեգներից մեկը ձիու գլուխը շուռ կտար, կգար, կնետահարեր այդ մի կենդ շանը՝ այդ ավերակ գյուղում... ավու՜ու՜ւու՜ւու՜ւ...

— Մե՛ր, ա՛յ մեր...





# ՏԵՍԱ՞Ք ԻՆՉ ԱՐԵՑ

ԼԻԳԱՐԻՏ ՄԱՐԳՍՅԱՆ

Կախարդ ձմեռը տեսա՞ք ինչ արեց.
Փաթիլ առ փաթիլ,
Թեթև՜, ճնիճն՜
Ծածկեց, մշուշեց իրար ետևից
Սարեր ու ձորեր, կածան ու շավիղ:
Բոլոր-բոլորին ինչ-որ շշնջաց,
Ինչ-որ գուրգուրեց, ինչ-որ համբուրեց,
Զնգուն առվակի շուրթերին տավիղ՝
Իր ճիպ, իր ճերմակ զմուռսը դրեց,
Հարսնաքող կարեց մրսած ծառերին,
Խաշամ-խազալին դարձավ նուրբ ծածկոց:
Եվ հեռու չված իր երգիչների
Ձայնը ականջում՝

---

Ա՜յ մեր, քնած ե՞ս...

Ես շորերս հագա, կոշիկներս հագա, գլխարկս դրեցի, բայց նարծես թե իմ ոտքերը չէի մտցնում իմ կոշիկների մեջ, և դուրս եկա: Ես տուփից սիգարեթ հանեցի և տարա բերանս, բայց իմ բերանում սիգարեթ կար: Իմ բերանում սիգարեթ կար, իմ ձեռքին լուցկի կար, իմ հագին իմ կոշիկներն էին, դա ես էի: Դա մեր գյուղն էր: Դա մեր գյուղի լուսինն էր: Գյուղը խաղաղ քնած էր լուսնալույսի մեջ: Եկավ ու գյուղի վրա հոինդ մաղեց մարդատար օդանավը: Աստղերի մեջ նրա կարմիր կրակները ես հեշտությամբ գտա: Եվ տարօրինակ էր, որ միասին այդպես կային թամուրլանգյան ժամանակների այդ վայոցն ու այդ հըռինդը: Հոինդը թուլացավ, մարեց, իսկ կարմիր կըրակները դեռ երևում էին և կարմիր կրակների հետ մարմրում էր վայոցը—առ՜ուտ՜ուտ՜ուտ՜ւ...

Ի՞նչ ես ուզում, շո՜ւն, Թամուրլանգն անցել է, բայց վաղուց, քոչվորների քոչերն անցել են, բայց վաղուց... Թե՞ դու պառավել էիր, քոչը քեզ լքել էր, և դու լաց ես լինում անցած քոչի ու քո մահվան վրա: Թե՞ դու մի բան գիտես, որ ես չգիտեմ, շո՜ւն, և դու օգնություն ես ուզում:

Ես մտա մեր տան մոտի ձորը, (ձորում ոռնոցը թույլ էր, ասես գետնի տակ էին վայում), ձորն անցա, ելա գերեզմանոցի մոտի բլուրը, և ոռնոցը գերեզմանոցից էր գալիս: Ես այդպես կանգնած էի, և գերեզմանոցը, այգիները, տները քնած էին այդ վայոցի մեջ—ավո՜ւո՜ւո՜ւո՜ւ...

Հանդիպակաց օդանավը եկավ, հոինդ մաղեց գյուղի վրա, և նրա կարմիր լույսերը քանի դեռ իմ գլխավերևն էին՝ ես ձորն անցա, մտա գերեզմանոց և գտա: Նրանք հենց իմ կողքին էին, մեկը չէր, երկուսն էին, գետնին տափակած, գլուխները թաթերին՝ նվում էին: Նրանք ինձ չտեսան, նրանք ոչինչ չէին տեսնում, նրանք մի ուրիշ աշխարհում էին: Մի քիչ էլ նայելով՝ ես ճանաչեցի կարմիր գամփռին: Մյուսը նույնպես կարմիր էր, բայց կատվի կարճ մազով, տափակվել ու բարակ նվում էր:

Ի՞նչ եք ուզում, շնե՜ր, Վանին մեռել է, բայց էդ ո՞վ է անմահ: Հիմա՜ր, հիշո՞ւմ եք, ես եմ ձեզ գողացել, առողջ, սառը գարնան մեջ դուք ձեր մոր հետ գնում էիք, հիշո՞ւմ եք: Ձեր ոչխարը հիմա ո՞վ է պահելու: Գյուղը քնած է, ամեն մեկն իր տան մեջ իր անկողնում փափուկ քնած է, ի՜նչ եք...

Նրանք ինձ չէին լսում, նրանք առհասարակ չէին լսում, նրանք չէին տեսնում, իրենց խլության ու կուրության ետևում նրանք մի ուրիշ աշխարհում էին, դե գնա ու հասկացրու նրանց, որ այս մեծ լուսնի տակ համարյա թե ոչինչ չի փոխվել: Ավո՜ւո՜ւո՜ւուո՜ւուո՜ւուո՜ւուո՜ւուու՜...

— Ա՜յ տղա, է՜յ, սա՜ր գնացող, այ ձիավոր է՜յ, էդ ո՞վ ես, է՜յ,— չգիտեմ ով կանչեց չգիտեմ ում,— էդ ո՞վ ես, է՜յ, Թի Զավենին ասա գա էս շները տա-



# ՁՄԵՌ

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

Լեռները ծաղկել են,
Եվ քամին նրանց
Բուրմունքն է բերում:
Ձյունն աղավնի է՝ երկրին իջած,
Որ կտցում է աշնան ոսկիները,
Եվ արևը ամռան՝ արմատներում պահված:
Աղջիկը քայլում է,
Եվ ձեռքերից նրա
Ճերմակ փաթիլներ են
Կաթում, կաթկթում:
Լեռները ծաղկել են,
Եվ քամին նրանց
Ծաղիկներն է բերում:

Անտառը որպես համերգասրահ՝
Լքված, անտանիք,
Համրացա՞վ, լռեց...
Կարծես թե ինչ-որ անհայտ զորությամբ
Մի նոր, մի հրաշք
Աշխարհ արարվեց...
Կախարդ ձմեռը տեսա՞ք ինչ արեց...

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

նի՞, էս շները տանի՞, տանի՞, Թի Ջավենին ասա էս շները տանի՞, շնե՞րը:

Եվ մեկն ասաց. «Ամբողջ գիշերը համերգ էին տալիս», և ծիծաղեցին, հետո մեկն ասաց. «Իբր էդ ո՞ւր է տանելու, պառավել, սատկելներու ժամանակըն է»:

Բայց դեռ երեկ նրանք փափուկ լակոտներ էին, մոր կողքերից վազում ու գլորվում էին, վազում-վազում ու գլորվում, ընկնում էին իրենք իրենց տան: Հովվաշները շուտ են պառավում: Քնում են քիչ, չարչարվում են շատ և շուտ են պառավում: Կարկուտի ու անձրևի տակ, գողի ու գայլի դեմ, անցած-գնացած հեծելազորների և գալիք հեծելազորների հեռավոր դղրդոցը թաթերի տակ գետնի մեջ... և դեռ լուսնի անհասկանալիությունը, և դեռ այն, որ գիշերվա խաղաղության մեջ նրանք տեսել էին նրան, ով որ եկավ, բաց աստղերի տակ համբուրեց քնած Վանու բաց ճակատը: Նրանք այդ տեսել էին և սկսել էին ոռնալ:

Ես գնում էի խոտ հավաքելու, թփուտ լանջում մի տեղ կարմիր գամփռը սահեց ու անցավ դեպի գյուղ: «Բո՛ք,— կանչեցի ես,— Բո՛ք, Բո՛ք», բայց նա ինձ չլսեց: Նա ինձ չտեսավ: Արար աշխարհում նա հիմա միայն մի բան էր ճանաչում՝ Վանու գերեզմանը, և նվալով քարշ էր գալիս դեպի գյուղ: Սարում նա չէր մնացել, մյուսը մնացել էր, նա չէր մնացել, կապը կրծել կտրել էր ու... ո՛ւուուո՛ւուուո՛ւուուուո՛ւուու-ո՛ւո՛ւ... երեք ցերեկ ու գիշեր: Ցերեկները դպրոցի զանգի ու աղմուկի, գյուղի կանչերի, աքաղաղների գիլ ծղրտոցների ու տրակտորների դղրդոցի մեջ նրա նվոցը չէր լսվում, բայց գիշերները միայն նրա նվոցըն էր՝ ավը՛ը՛ը՛ը՛ը՛ը՛...

Տղերքն անտառապահի հրացանն ուզեցին, և անտառապահն ինքը եկավ: Տղերքից մի երկուսն ասացին «մեղք է», բայց այդտեղ Անտոնի Ջավենն ասաց՝ «Իմ երեխեքն ավելի են մեղք»: Նրա տունը գերեզմանոցի մոտ է, և շունն ամենից շատ նրանց ականջների մեջ էր վայում: Անտոնի Ջավենն ասաց. «Իմ երեխեքը մեղք չեն, նա է մե՞ղք»: Անտառապահը գնաց մտավ գերեզմանոց, կանգնեց շան դեմ, հրացանն ուսից իջեցրեց, փողը դրեց շան աչքերի մեջտեղը, իսկ շունը վայում էր-վառ՛ւո՛ւո՛ւո՛ւո՛ւ... Շունը մնաց այդպես, այդպես գլուխը թաթերին պառկած, թեև հրացանը ճանաչում էր:

Պատերազմից հետո, երբ ես փոքր էի և սարում էի և Վանու համար շներ գողացա, երբ գայլը շատ էր և բոլոր հովիվների համար միայն մի մաշված Չամբար կար, երբ Վանուն ամուսնացրին, երբ Սսատուրը բանակից եկել էր, երբ Դանելանց Արտեմ քեռին դեռ շվի էր փչում, երբ թուրքերի քոչը գալիս ու գալիս էր, այդ գարնանն ահա հովիվներին հրացան էին տվել, ամեն մի կրակոցի շները ցրիվ էին գալիս, և այդ գարնանից ահա այդ շունը ճանաչում էր հրացանը...



# ԱՆՏՈՆ

*(Ծննդյան 115-ամյակի առթիվ)*

*Մարդու մեջ ամեն ինչ պետք է գեղեցիկ լինի. և՛ դեմքը, և՛ հագուստը, և՛ հոգին, և՛ մտքերը»,— ասում է Չեխովի պիեսներից մեկի հերոսը: Այդպիսին էր կյանքում ինքը՝ ռուս մեծ գրողը: Չեխովի սքանչելի արվեստը մի նոր բարձրության հասցրեց ռուս, և ոչ միայն ռուս, դասական գրականությունը, նշանակալից ազդեցություն թողեց թատրոնի կայացման ընթացքի վրա: Սակայն Չեխովի բարի ու շռայլ տաղանդը դրսևորվում էր ոչ միայն գրականության մեջ, այլև անձնական կյանքում: «Ընդհանուրի բարօրությանը ծառայելու ցանկությունը անպատճառ պետք է լինի հոգու պահանջ, անձնական երջանկության պայման»,— գրել է Չեխովը օրագրում և այս սկզբունքով էլ նա ապրեց իր կարճատև կյանքը: Գրական գործը կիսատ թողնելով, բժիշկ Չեխովը մեկնում էր խոլերայով վարակված շրջանները, մասնակցում սովյալներին փրկելու աշխատանքներին: Նրա տան դուռը գիշեր-ցերեկ բաց էր ամեն տեսակ օգնություն հայցողների առջև: Չեխովը անվճար բուժում էր հիվանդ գյուղացիներին, իր միջոցներով դպրոց կառուցեց նրանց երեխաների համար, աջակցում էր հիվանդանոց և գրադարան կառուցելուն: Ընդհանուրի բարօրությանը ծառայելու ամենահայտնի օրինակը Չեխովի դժվարին և տառապանքով լի ճանապարհորդությունն էր Սախալին կղզին, ցարական այդ դժոխային աքսորավայրի մերկացումն ու դատապարտումը: «Դժվար է ասել, թե Չեխովի մեջ ով էր ավելի բարձր՝ մա՞րդը, թե՞ արվեստագետը,— գրում է նրա ժամանակակիցը:— Չեխովի պայծառ անձնավորությունը մի կատարյալ ներդաշնակ ամբողջություն էր, և մարդկայինը չի կարելի առանձնացնել արվեստագետից, ինչպես արվեստագետը՝ մարդուց»:*

*Անտոն Պավլովիչ Չեխովը հայ ժողովրդի ջերմ բարեկամներից էր: Նա առաջին անգամ հայերի հետ ծանոթացել է իր ծննդավայ-*

# Ո՞Վ Է ՄԵՂԱՎՈՐ

*Ա. Պ. ՉԵԽՈՎ*

Մի անգամ քեռիս՝ չոր, զայրացկոտ, փայտի վրա անցկացված հին ապխտած սիգայի նման կոլեգիական խորհրդական Պյոտր Դեմյանիչը, երբ պատրաստվում էր գիմնազիա գնալու, որտեղ նա լատիներեն էր դասավանդում, նկատեց, որ մկները կրծոտել են շարահյուսության գրքի կազմը:

— Էսի՛ր, Պրասկո՛վյա,— խոհանոց մտնելով՝ դիմեց նա խոհարարուհուն:— Որտեղի՞ց են մեզ մոտ մկներ հայտնվել: Հապա տե՛ս, երեկ գլխարկս էին կրծոտել, իսկ այսօր այլանդակել են շարահյուսության գիրքը: Այսպես, հավանաբար, կսկսեն և հագուստ ուտել:

— Իսկ ի՞նչ կարող եմ անել: Ես չեմ նրանց այստեղ հրավիրել,— պատասխանեց Պրասկովյան:

— Հարկավոր է մի միջոց գտնել: Գուցե կատո՞ւ ճարես:

— Կատու ունենք, բայց ոչ մի բանի պետք չէ,— ասաց Պրասկովյան և ցույց տվեց անկյունը, ուր ավելի մոտ, գունդուկծիկ, ննջում էր տաշեղի պես նիհար, սպիտակ մի կատվի ձագ:

— Ինչո՞ւ պետք չէ,— հարցրեց Պյոտր Դեմյանիչը:

— Դեռ ջահել է ու հիմար: Ըստ երևույթին, նույնիսկ երկու ամսական չկա:

— Հը՛մ… Ուրեմն պետք է նրան վարժեցնել: Այդպես պառկելու փոխարեն՝ ավելի լավ է վարժվի:

Այդ ասելով, Պյոտր Դեմյանիչը մտահոգ հոգոց հանեց և դուրս եկավ խոհանոցից: Կատվի ձագը գլուխը բարձրացրեց, ծուլորեն նայեց նրա ետևից և նորից փակեց աչքերը:

Կատվի ձագը չէր քնել, մտածում էր: Ինչի՞ մասին: Իրական կյանքին ծանոթ չլինելով, չունենալով տպավորությունների ոչ մի պաշար, նա կարող էր մտածել միայն բնազդաբար և կյանքը նկարագրել այն պատկերացումներով, որոնք արյան ու մարմնի հետ ժառանգություն է ստացել իր նախնի վագրերից (ըստ Դարվինի): Նրա մտքերը կիտանինջ անըրջանքի բնույթ ունեին: Կատվային երևակայությունը նկարում էր Արաբական անապատի պես ինչ-որ մի բան, որի վրայով անցնում էին Պրասկովյային, վառարանին և ավելին շատ նման ստվերներ: Ստվերների մեջ հանկարծ հայտնվում է կաթով լի մի ափսե, ափսեի վրա աճում են թաթիկներ, այն սկսում է շարժվել ու փախչելու մտադրություն ցույց տալ… Կատվի ձագը ցատկում է և արյունռուշտ ցանկասիրությունից նվաղելով՝ ճանկերը խրում նրա մեջ: Երբ ափսեն անհետացավ մշուշի մեջ, հայտնվեց Պրասկովյայի վայր գցած մսի կտորը, որը ծվծվոցով մի

# ՊԱՎԼՈՎԻՉ ՉԵԽՈՎ

րում՝ Տագանրոգում, իսկ հետո՝ հարևան Նոր-Նախիջևան ու Ռոստով քաղաքներում, որոնք հայկական գաղթօջախներ էին: Իր տպավորությունները Չեխովը հայտնում է մի շարք պատմվածքներում, որոնցից ամենաամբողջականն ու բնարականը «Գեղեցկուհիներ» պատմվածքն է: Հետագայում, երբ արդեն անվանի գրող էր, Չեխովը ծանոթանում է Հովհաննես Այվազովսկու, Ալեքսանդր Սպենդիարյանի, Վարդգես Սուրենյանցի հետ: Հաջակավոր ծովանկարչի հրավերով լինելով Թեոդոսիայում, Չեխովը գրում է. «Այդ հանճարի հայկական ոգին կզացվում է ամեն մի քայլափոխում»: Ալեքսանդր Սպենդիարյանը Չեխովի հետ հանդիպումներ է ունեցել Յալթայում: Գրողի հիշատակին է նվիրել նա իր «Մենք կհանգստանանք» երաժշտական ստեղծագործությունը, որը գրված է «Քեռի Վանյա» պիեսի հերոսուհի Սոնյայի մենախոսության հիման վրա: Չեխովը և Վարդգես Սուրենյանցը հանդիպել են Գեղարվեստական թատրոնում, որտեղ հայ նկարիչը ձևավորում էր «Ճայ» պիեսի բեմադրությունը:

1895 թվին, Մոսկվայում, մի խումբ հայ և ռուս մտավորականներ նախաձեռնում են հրատարակել «Եղբայրական օգնություն Թուրքիայում տառապած հայերին» ժողովածուն: Կազմողները Չեխովին խնդրում են մասնակցել: Չեխովը անմիջապես համաձայնում է և ուղարկում «Սայլակում» պատմվածքը: Պահպանվել են Չեխովի նամակները, որոնք պատմում են, թե ինչ միջոցներ է նա ձեռնարկել՝ Սախալին աքսորված հայազգի հեղափոխական Իվան Մանուչարովին (Հովհաննես Մանուչարյանց) գտնելու և վիճակը բարելավելու համար: Հետաքրքիր է իմանալ, որ Չեխովը օգտագործել է Անտոն Տեր-Չեխյանց կեղծանունը:

Անտոն Պավլովիչ Չեխովի ստեղծագործությունները հայերեն են թարգմանվել դեռ նրա կենդանության օրոք: Մինչև այժմ Չեխովից հայերեն հրատարակվել է մոտ երեսուն գիրք, որոնց թվում՝ երկերի հինգհատորյա ժողովածուն: Հայ թատրոնում բեմադրվել են Չեխովի պիեսները, Երևանում կա նրա անվան դպրոց, փողոց: Իհարկե, կարելի է էլի տեղեկություններ ու փաստեր հաղորդել, թե ինչքան սիրելի է Չեխովը հայ ժողովրդի համար, բայց մի՞թե այդ ապացուցելու կարիքը կա:

կողմ էր փախչում: Սակայն կատվի ձագը ցատկում և ճանկերը խրում է նրա մեջ... Ինչ էլ որ երևում էր ջահել երազողին, վերջը միշտ լինում էր ցատկը, ճանկերն ու ատամները: Ուրիշի հոգին հանելուկ է, կատվի ձագինը առավել ևս, բայց թե ինչքան այս նկարագրված պատկերները մոտ են ճշմարտությանը, երևում է հետևյալ փաստից. կիսանինջ անուրջներով տարվելով, կատվի ձագը հանկարծ տեղից ցատկեց, փայլող աչքերով նայեց Պրասկովյային, մազերը բիզբիզ կանգնեցին, և թռիչք գործելով՝ ճանկերը խրեց խոհարարուհու փեշի մեջ: Ակներևորեն, նա ծնվել էր մուկ բռնելու համար՝ լիովին արժանի իր արյունռուշտ նախնիներին: Ճակատագիրը նրան կանխորոշել էր լինելու նկուղների, մառանների և ամբարների սարսափը: Եթե միայն չլինե՞ր դաստիարակությունը: Սակայն առաջ չանցնենք:



Գիմնազիայից վերադառնալիս, Պյոտր Դեմյանիչը մտավ մանրավաճառի կրպակը և մի թակարդ գնեց: Ճաշից հետո նա կեռիկին ամրացրեց կոտլետի մի կտոր և ծուղակը դրեց բազմոցի տակ, ուր թափված էին հին տետրեր, որոնք Պրասկովյան օգտագործում էր տնտեսական կարիքների համար: Երեկոյան ուղիղ ժամը վեցին, երբ հարգարժան լատինագետը աշակերտների տետրերն էր ստուգում, բազմոցի տակ հանկարծ լսվեց՝ չըրը՜խկ, և այնպես ուժգին, որ քեռիս ցնցվեց ու ձեռքից թողեց գրիչը: Շտապով նա մոտեցավ բազմոցին և հանեց թակարդը: Մատնոցի մեծությամբ փոքրիկ, փայլուն մուկը հոտոտում էր մետաղալարը ու վախից դողում:

— Դե ահա,— քրթմնջաց Պյոտր Դեմյանիչը և այնպես չարագույժ նայեց մկանը, կարծես ուզում էր նրան «մեկ» նշանակել:— Բռնվեցի՞ր, ստո՛ր: Սպասի՞ր, ես քեզ չարահյուսության գիրք ուտել ցույց կտամ:

Ջննելով զոհին, Պյոտր Դեմյանիչը թակարդը դրեց հատակին ու կանչեց.

— Պրասկո՛վյա, մուկը բռնվել է: Այստե՛ղ բեր կատվի ձագին:

— Հիմա,— պատասխանեց Պրասկովյան և մի րոպե անց մտավ ներս՝ ձեռքերի վրա բերելով վագրերի հետնորդին:

— Լավ է,— փնթփնթում էր Պյոտր Դեմյանիչը՝ շփելով ձեռքերը:— Մենք դրան կվարժեցնենք: Ահա այսպես... Թող հոտ քաշի և նայի: Ահա այսպես...

Կատվի ձագը զարմացած նայում էր քեռուս, թիկնաթոռներին, հոտոտում թակարդը, հետո, թերևս վախեցած լամպի վառ լույսից և իրեն ուղղված ուշադրությունից, թափով պոկվեց ու սարսափահար փախավ դեպի դուռը:

— Կանգնի՛ր,— նրա պոչից բռնելով՝ ճչաց քեռիս:— Կանգնի՛ր, անպիտա՛ն: Մկնից վախեցա՞ր, հիմա՞ր: Տե՛ս. սա մուկ է: Դե, տե՛ս: Տե՛ս, քե՞զ են ասում:

Պյոտր Դեմյանիչը բռնեց կատվի վզից և դունչը թակարդին մոտեցրեց:

— Տե՛ս, զզվելի՜: Հապա վերցրո՛ւ սրան և պահիր, Պրասկո՛վյա: Պահի՛ր դռնակի դեմ: Երբ ես մկանը բաց թողնեմ, դու էլ դրան իսկույն թող: Հասկացա՞ր, իսկույննեթ բա՛ց թող:

Քեռիս՝ դեմքին խորհրդավոր արտահայտություն, բարձրացրեց դռնակը: Մուկը անվճռականորեն դուրս եկավ, հոտոտեց օդը և նետի նման սուրաց բազմոցի տակ: Ազատ թողնված կատվի ձագը պոչը վեր տընկեց և փախավ սեղանի տակ:

— Փախա՜վ, փախա՜վ,— կատաղի դեմք ընդունելով՝ բացականչեց Պյոտր Դեմյանիչը:— Ո՞ւր է այդ սրիկան: Սեղանի՞ տակ: Դե սպասի՛ր:

Քեռիս կատվի ձագին դուրս հանեց սեղանի տակից և թափահարեց օդում:

— Ա՜յ քեզ խարդախ,— փնթփնթաց նա և ոլորեց կատվի ձագի ականջը:— Ա՛ռ քեզ: Ա՛ռ քեզ: Մյուս անգամ էլ բաց կթողնե՞ս, խարդա՛խ:

Հաջորդ օրը Պրասկովյան նորից բացականչություն լսեց.

— Մուկը բռնվել է, Պրասկո՛վյա: Կատվի ձագը այստե՛ղ բեր:

Կատվի ձագը երեկվա վիրավորանքից հետո թաքնըվել էր վառարանի տակ և ամբողջ գիշերն այդտեղ անցկացրել: Երբ Պրասկովյան դուրս հանեց այդտեղից և վզից բռնած բերեց առանձնասենյակ ու դրեց թակարդի դեմ, կատվի ձագը դողում էր ամբողջ մարմնով և խղճալի մլավում:

— Դե թո՛ղ մի քիչ ընտելանա,— հրամայեց Պյոտր Դեմյանիչը:— Թո՛ղ նայի ու հոտ քաշի: Նայի՛ր և վարժվի՛ր: Կանգնի՛ր, ա՜յ սատկես դու,— գոռաց նա, նկատելով, թե ինչպես կատվի ձագը ետ-ետ է գնում:— Կքոթակեմ: Հապա ականջի՛ց քաշիր: Ահա այսպես: Իսկ այժմ դի՛ր դռնակի դեմ:

Քեռիս դանդաղ բարձրացրեց դռնակը: Մուկը ծլկեց հենց կատվի ձագի քթի տակով, դիպավ Պըրասկովյայի ձեռքին և փախավ պահարանի տակ, իսկ կատվի ձագը ազատ զգալով, հուսահատ թռիչք գործեց և թաքնվեց բազմոցի տակ:

— Այս մուկն էլ բաց թողե՞ց,— ոռնաց Պյոտր Դեմյանիչը:— Սա ի՞նչ կատու է: Սա գարշանք է, աղբ: Քոթակե՛լ, հենց թակարդի՛ մոտ քոթակել:

Երբ բռնվեց երրորդ մուկը, կատվի ձագը թակարդի և նրա բնակչի տեսքից ցնցվեց ամբողջ մարմնով և ճանկռտեց Պրասկովյայի ձեռքերը... Չորրորդ մկնից հետո քեռիս իրեն կորցնելով՝ ոտքով կատվի ձագը դեն նետեց ու ասաց.

— Կորցրո՜ւ այս նողկալուն: Այսօրվանից նրան տանը չտեսնեմ: Մի տե՛ղ նետիր: Ոչ մի բանի պետք չէ:

Անցավ մի տարի: Նիհար և թուլակազմ կատվի ձագը դարձավ պատկառազդու և խելամիտ կատու: Մի անգամ հետնաբակերով նա ժամադրության էր շտապում ընկերուհու մոտ: Քիչ էր մնացել նպատակակետին հասներ, երբ հանկարծ շրշյուն լսեց, այնուհետև մի մուկ տեսավ, որը ջրատաշտակի մոտից փախչում էր դեպի ախոռ: Իմ հերոսը մազերը բիզ-բիզ ցցեց, աղեղի պես կորացրեց մեջքը, ֆշշաց և ամբողջ մարմնով դողալով՝ փոքրոգաբար փախուստ տվեց:

Ավա՜ղ, երբեմն ես էլ փախչող կատվի ծիծաղելի վիճակի մեջ եմ ընկնում: Ժամանակին կատվի ձագի պես ես էլ պատիվ եմ ունեցել լատիներեն սովորել քեռուց: Այժմ, երբ առիթ է ներկայանում տեսնել անտիկ հնության որևէ ստեղծագործություն, ագահաբար հիանալու փոխարեն՝ սկսում եմ հիշել ut consecutivum!, անկանոն բայեր, քեռուս դեղնականաչավուն դեմքը, ablativus absolutus[1]... Ես գունատվում եմ, մազերս բիզ-բիզ են կանգնում, և կատվի նման ամոթալի փախուստ եմ տալիս:

*Թարգմ. ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑԻ*

[1] Լատիներեն քերականական դարձվածքներ։

*Նկ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՍԱՄՎԵԼՅԱՆԻ*



ԲԱՄ

# ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ՀԱՐՎԱԾԱՅԻՆ ԿԱՌՈՒՅՑԸ

Բայկալ-Ամուրյան մայրուղին մեր երկրի ամենախոշոր և ամենակարևոր կառույցներից մեկն է: Տյումենի մարզ, Յակուտիա, Կրասնոյարսկի երկրամաս, Մագադանի մարզ, Չուկոտկա, Կամչատկա: Ֆրանսիայի և Անգլիայի պես շատ երկրներ կարող են տեղավորվել այս անծայրածիր տարածություններում: Իսկ արդյոք շա՞տ կան այդտեղ երկաթուղիներ: Միայն մեկը, այն էլ՝ հարավում: Նայեցե՛ք քարտեզին և կըհասկանաք, թե այդտեղ ինչքան անհրաժեշտ է երկաթուղին: Այժմ կառուցվում է այդ երկաթուղին՝ Բայկալ-Ամուրյան մայրուղին, կամ հապավված՝ ԲԱՄ:

Երբ ԲԱՄ-ը պատրաստ լինի, կարող եք առանց որևիցե տեղափոխության՝ Մոսկվայից, Սվերդլովսկից, Վլադիվոստոկից, Ռիգայից, մի խոսքով՝ Վլադիվոստոկ-Ռիգա մայրուղու վրա գտնըվող բոլոր քաղաքներից մեկնել Բայկալ: ԲԱՄ-ը իրար կմիացնի նաև Ամուրի Կոմսոմոլսկը, Խաբարովսկը, Վլադիվոստոկը, Սովետական Հավանը, իսկ ապագայում՝ Սախալինի և Մագադանի մարզի քաղաքները, Օխոտյան ծովի ափամերձ վայրերը, Կուրիլյան կղզիները:

Արտասահմանում ԲԱՄ-ը անվանում են դարի մեծագույն կառույց, որը նշանակությամբ հավասար է Սուեզի և Պանամայի ջրանցքներին, Սիբիրյան մեծ մայրուղուն:

Մեր երկրում ԲԱՄ-ը անվանում են կոմերիտմիության գլխավոր կառույց: Այդ կոչումը նրան շնորհեց ՀամԼԿԵՄ 17-րդ համագումարը, որի պատգամավորները միացան մայրուղու առաջին հարվածային կոմերիտական շինարարական ջոկատին:

Կոմերիտմիության գլխավոր կառույց... Նրա նշանակությունը մեր երկրի տնտեսության համար անօրինակ է: «Բայկալ-Ամուրյան մայրուղին կանցնի դարավոր տայգայով, կհասնի այնտեղ, որտեղ գտնվում են վիթխարի հարստություններ, որը պետք է ի սպաս դնել հայրենիքին ծառայելու,— համագումարի պատգամավորներին ասաց ՍՄԿԿ ԿԿ գլխավոր քարտուղար Լ. Ի. Բըրեժնևը:— Այստեղ կստեղծվի երկրի նոր մեծ արդյունաբերական շրջան, վեր կբարձրանան նոր քաղաքներ ու ավաններ»:

# ՀԵՔԻԱԹՆԵՐԻ ՊԱԼԱՏԸ

*Սովորական ճանապարհ է, սովորական ծառեր են: Գնում, գնում ես, և քո առջև անսպասելիորեն, ինչպես հեքիաթներում է լինում, իր ողջ շքեղությամբ կանգնում է Շահումյանի շրջանի պիոներների պալատի շենքը: Հյուրընկալորեն բացվում են ապակեպատ դռները ու խկույն մոռանում ես, թե դրսում տարվա որ եղանակն է, որովհետև միանգամից հայտնվում ես կանաչի, փթթած ծաղիկների մեջ:*

*Այս պալատը երկար պատմություն չունի և ոչ մի նշանավոր մարդու մասին չեն ասում, որ նա իրենց սանն է եղել: Չեն ասում, որովհետև ընդամենը չորս տարի է, ինչ գործում է: Պալատը 25 տիպի 130 խմբակ ունի և 2750 սաներ, որոնցից յուրաքանչյուրի կարծիքով իրենց խմբակը ամենալավն է:*

*Պալատի բոլոր համերգների ու միջոցառումների պարդը ժողովրդական պարերի, կրկեսային-էստրադային խմբակների ելույթներն են: Պարի խմբակի անդամները հաջող ելույթներ են ունեցել Կլայպեդայում: Ռիգայի պիոներների պալատում ելույթներով հանդես է եկել էստրադային խումբը, ցուցադրվել են գեղանկարչական, քանդակագործական, խեցեգործական, ծեռարվեստի խմբակների սաների աշխատանքները:*

*Պալատում կատարված լավագույն գործերի հանրագումարը ավանդույթ դարձած տարեվերջյան հաշվետու ցուցահանդեսն է: Այս տարի ցուցահանդեսում լավ էր ներկայացել գեղանկարչական խմբակը: Սաներից շատերի անունները արդեն ծանոթ էին մանկական պատկերասրահից, ուսուցչի տանը կազմակերպված ցուցահանդեսներից, «Ծիծեռնակ» ամսագրի շապիկներից: Այդ երեխաները բոլորն էլ գույնի պարմանալի զգացողություն ունեն և ունեն անհատականություն, որը շատ կարևոր է:*

*Ցուցահանդեսում հիանալի գորգեր էին ցուցադրված՝ «Ղապախ», «Զվարթնոց», «Երևան», «Գողնոց»:*



## ՋՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

**Խոր անտառում, հեռո՜ւ, հեռո՜ւ,**
**Սառած, լճած առվի ափին**
**Ճերմակ տունն է Ձմեռ պապի:**
**Այդ տնակում կա մի աղջիկ,**
**Շատ անուշիկ:**
**Անունն էլ իր պես քնքուշ՝**
**Ջյունանուշիկ:**

**Ձմեռ պապի աղջիկն է նա,**
**Շատ է սիրում կանաչ ու թուփ,**
**Հենց գարունն է երգով գալիս,**
**Գիշերները դաշտ ու սարում**
**Պես-պես ծաղիկ է նկարում,**
**Իսկ արևը առավոտյան**
**Գույն է տալիս նկարներին:**
**Իսկ ձմռանը աղջիկն այդ լավ**
**Էլ նկարներ որտե՞ղ անի,**
**Եվ, որպեսզի նկարելը չմոռանա,**
**Նա նախշեր է քաշում սիրուն**
**Մեր ու ձեր տան պատուհանին:**

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՐԶԱՅԱՆԻ



Նայում ես ու պարմանում. այս ի՜նչ ոսկե մատներ, ի՜նչ շնորհք են ունեցել այս աղջիկները՝ Էմման, Լարիսան, Նաիրիկը, Հասմիկը, Համեստը, Թամարան... Նրանցից ամենաավագները 14, իսկ կրտսերները 11 տարեկան են:

Խեցեգործական խմբակի աշխատանքները գրավիչ էին ու ինքնատիպ՝ տարբեր տեսակի ծաղկամաններ, մոմակալներ, հուշանվերներ: Դրանցից մի քանիսն այնքան լավն էին, աչք շոյող, որ շատերը կուզենային իրենց տանն ունենալ:

Փոքրիկ քանդակագործներն առանձնապես լավ էին քանդակել իրենց սիրած գրքերի հերոսներին՝ Դոն-Կիխոտին, Քաջ-Նազարին: Երբեմն նրանց օգնության



էին եկել խեցեգործական խմբակի սաները՝ թրծել, ջնարակել էին կավե արձանիկները:

Ցուցահանդեսի մի այլ մասում կար ու ձևի խմբակի ցուցանմուշներն էին՝ գեղեցիկ զգեստներ, մանկական ասեղնագործ հագուստներ և մի հաճելի անակընկալ՝ տղաների վարպետորեն կարված կոստյումներ... որոնք կարել էին տղաները (պալատում գործում է նաև կար ու ձևի տղաների խմբակ):

Հրթիռների, նավերի, օդանավերի գործող մոդելները բացի նրանից, որ օդում, ջրում մնալու լավ արդյունք են ցույց տալիս, նաև գեղեցիկ են:

Տրանզիստորային ընդունիչները տարբեր չափսերի են, հարմար և՛ տանը պահելու, և՛ քաղաքից դուրս տանելու համար: Ընդունիչ-խաղալիքներ կային, որոնք



միացնելու համար հարկավոր էր մտածել: Օրինակ, հարկավոր էր լինում շարժել ընդունիչին ամրացրած արջի գլուխը կամ ընդունիչի վրա կանգնած արագիլներից մեկին: Հետաքրքիր աշխատանքներ էին «Հաղորդիչով լուսնագնացը», «Քայլող ռոբոտը», «Բկլիկ կատուն»: Նրանք աշխատում էին մարտկոցով: Բավական էր վերցնել կատվի առջև դրված ձուկը, վառվում էին կատվի աչքերը ու նա մլավում էր: Պատկերացրեք դրանցով խաղացող երեխաների ուրախությունը:

Ցուցահանդեսը մի յուրահատուկ քննություն էր, որտեղ երևում էր ամբողջ տարվա ընթացքում մեծ կոլեկտիվի կատարած աշխատանքը:

ՖԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ

Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ

# Դպրոցի



Մեր դպրոցի նախկին աշակերտ Համայակ Լևոնի Ղազարյանը Սովետական Միության հերոս է,— հաղորդեց Երևանի Ռուսթավելու անվան դպրոցի դիրեկտորը պատանի հետախույզների ջոկատին,— բայց թե որտեղ է նա զոհվել և որտեղ է թաղված, հայտնի չէ:

Պատանի հետախույզները սկսեցին որոնումները: Նախ Երևանում գտան հերոսի հայրենի տունը: Համայակի եղբայրը շատ բան պատմեց հերոսի մանկությունից ու պատանեկությունից, տանը մնացած նրա անձնական իրերից նվիրեց նրանց, տվեց Համայակի կնոջ և որդու հասցեն, որոնք Ռուսաստանում են ապրում: Պիոներները նամակ գրեցին վերջիններիս: Պատասխանը չուշացավ: Եկատերինա Ղազարյանը և Սուրենը լուսանկարներ ուղարկեցին և գրեցին, որ Համայակի վերջին երեք նամակները ստացել են Չերկասսկի մարզի Օվսյանկով և Յուրշիխա գյուղերից:

Ջոկատի անդամները նամակներ գրեցին հիշյալ գյուղերի գյուղական սովետներին, դպրոցների դրուժինաներին և ՍՍՀՄ պաշտպանության մինիստրության արխիվին:

ՍՍՀՄ պաշտպանության մինիստրության արխիվից ստացված պատասխան նամակում մանրամասն նկարագրված էր Համայակ Ղազարյանի մարտական կենսագրության հերոսական էջերից մի քանիսը: «Կապիտան Համայակ Ղազարյանը թշնամու դիրքերից տեղացող անասելի կրակի պայմաններում իր գումարտակով կարողացավ կտրել-անցնել Դնեպր գետը և Առվի գյուղի մոտ ուժեղ հենակետ ստեղծել: Ֆաշիստական զորքերը առավել մեծ ուժերով բազմաթիվ գրոհներ ձեռնարկեցին նրա գումարտակի վրա, սակայն հմուտ հրամանատարը կարողացավ լավ պաշտպանվել ու ետ մղել թշնամու գրոհները՝ մեծ կորուստ պատճառելով նրանց կենդանի ուժին և ռազմական տեխնիկային:

Նրա ղեկավարությամբ մարտիկները կարողացան գրոհով վերցնել մի կարևոր բարձունք ևս և դիմադրելով ֆաշիստների կատաղի հարձակումներին, հնարավորություն տվեցին մեր ստորաբաժանումնե-

## ՍՊԵՂԱՆԻ

Ես ունեմ մի բարեկամ, մի շատ լավ բարեկամ, որի անունը, սակայն, չգիտեմ, որի հետ մեկ անգամ եմ միայն զրուցել: Նա ապրում է Երևանում՝ Նալբանդյան փողոցի վրա, ոչ այնքան մեծ մի շենքում, չորս կողմից շրջափակված բազմահարկ տներով: Նրա բակով ես հաճախ եմ անցնում, և ամեն անգամ անցնելիս՝ մտքով զրուցում եմ բարեկամիս հետ:

Իր տան պատուհանների առաջ նա ասֆալտապատ բակից մի մեծ սենյակի չափ տարածություն է անջատել ու վերածել ծաղկանոցի: Ստացվել է փոքրիկ, բայց ի՜նչ շքեղ ծաղկանոց:

Վաղ գարնանը, երբ դեռ քաղաքի բարձրադիր մասերում ձյուն է նստած, այստեղ բողբոջում է յասամանի թուփը: Դա մի սքանչելի գեղեցկություն է: Յասամանի բաց մոխրագույն, ցախ-ցախ ճյուղերի վրա, կարծես գեղբնական ինչ-որ վորությամբ, պայթում են կանաչավուն, ուռուցիկ բողբոջները:

Հիշո՞ւմ եք 1973 թվականի գարունը ինչքա՜ն ուշ եկավ: Ցուրտ էր, տխուր ու վատ օրեր էին: Իմ անծանոթ բարեկամի փոքրիկ ծաղկանոցը նույնպես «քնած» էր: Մի երկու շաբաթ կլիներ, չէի անցել այդ կողմով և գարնան ուշանալն էլ ինձ համբերությունից հանել էր: «Կգնամ այդ բակով, գուցե թե մի նշան լինի, գարուն հիշեցնող ինչ-որ բան»,— մտածեցի ես ու թեև անհույս, բայց գնացի:

Եվ պատկերացնո՞ւմ եք իմ հրճվանքը, յասամանի բաց մոխրագույն, ցախ-ցախ ճյուղերի վրա հպարտորեն շարվել էին խոշոր բողբոջները և յուրաքանչյուր բողբոջից շողշողուն ուլունքի պես կախվել էր անձրևի սառը մի կաթիլ: Անկյանք, համարյա թե չըտաքացնող արևի շողերից կայծկլտացող այդ կաթիլները կարծես իրենք էին ջերմություն արձակում:

Ես երկար կանգնեցի. դա մի ուրիշ բավականություն էր: Բնության հետ երես առ երես հանդիպելու երանելի մի պահ:

Հետո ես չնկատեցի, թե ինչպես անցան օրերը և երբ ծաղկեց ըսպիտակ յասամանի այդ թուփը, երբ բացվեցին ցանկապատի տակի մանուշակները: Իսկական, բուրավետ ու մուգ մանուշակներ: Ո՛չ նրանցից, որ աճում են ջերմոցներում՝ թելանման երկար պոչերով և անհոտ, քիմիական ներկ հիշեց-

# հերոս սանը

րին անկորուստ անցնել Դնեպրը և թշնամուն քշել ավելի հեռու...»

Պատանի հետախույզները շարունակեցին որոնումները՝ պարզելու համար, թե որտեղ է թաղված իրենց դպրոցի հերոս սանը: Եվ կարողացան այդ նույնպես պարզել: Յուրշիխայից նամակ ստացվեց, որով հայտնվում էր նրանց, որ Սովետական Միության հերոս Հմայակ Ղազարյանը իրենց գյուղի ազատագրական մարտերում ծանր վիրավորվել է և հիվանդանոցում մի քանի օր մնալուց հետո մահացել: Գյուղում կան մարդիկ, որոնք հիվանդանոցում այցելել ու խնամել են նրան: Այժմ հերոսի գերեզմանը սիրով խնամում են պատանի հետախույզների ջոկատի անդամները:

Երկու տարվա որոնումներից հետո, պատանիներին հաջողվեց հայտնաբերել հերոսի գերեզմանը և մեծ քանակությամբ նյութեր ձեռք բերել նրան նվիրված թանգարանի համար: Յուրշիխա մեկնելուց առաջ այդ նյութերով գեղեցիկ անկյուն ձևավորեցին դպրոցի միջանցքում, տեղեկացրին Եկատերինա Ղազարյանին ու Սուրենին, որ հերոսի գերեզմանը հայտնաբերել են և այցելության են գնում:

Յուրշիխան ու շրջակա գյուղերը մեծ հանդիսավորությամբ դիմավորեցին հայ դպրոցականներին: Դիմավորողների մեջ էին նաև հերոսի այրին ու որդին:

Պատանի հետախույզները հերոսի հարազատների հետ այցելեցին նրա շիրմին, ծաղիկներ դրեցին և հայրենիքից բերված հողը շաղ տվեցին նրա գերեզմանին...

Այնուհետև նրանք Յուրշիխայում այցելեցին Հմայակ Ղազարյանին ճանաչող տարեցներին:

Յուրշիխայի բնակիչները մեծ շուքով ճանապարհ դրին հյուրերին: Երևանի օդանավակայանում նրանց դիմավորեցին պիոներներ, պատերազմի մասնակիցներ, հերոսի ընկերներն ու հետաքրքրասերների մի մեծ բազմություն: Պատանի հետախույզների հետ Հայաստան էին եկել հերոսի կինն ու որդին: Սպայի տանը մեծ հանդիսավորությամբ նշեցին Հմայակ Ղազարյանի ծննդյան 60-ամյակը: Պիոներներն իրենց ստեղծած անկյունը հարստացրին նոր լուսանկարներով, հետաքրքիր տվյալներով ու փաստաթղթերով:

Պատանի հետախույզները որոշել են ֆաշիզմի դեմ տարած հաղթանակի 30-ամյակի կապակցությամբ կրկին այցելել խիզախ մարտիկի գերեզմանին: Այս անգամ էլ նրանք Հայաստան կվերադառնան Յուրշիխայի դպրոցականների հետ, որոնք մեծ սիրով պահպանում ու խնամում են հերոսի գերեզմանը, որոնք իրենց դպրոցը վերանվանել են Հմայակ Ղազարյանի անվան և նամակներում տեղեկացնում են, որ իրենց դպրոցի յուրաքանչյուր աշակերտ ձգտում է ապրել, սովորել ու պայքարել մեծ հայրենասերի օրինակով:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

---

*նող վարդագույնով:*

*Իսկ հետո բացվեցին մարգարտածաղիկները: Իսկ հետո ծաղկեց մասրենու մեծ թուփը՝ սպիտակ ու բաց վարդագույն խառնուրդով: Հետո, երբ ծաղկեց բալենին, որտեղից-որտեղ մեղուները տեղն իմացան ու եկան թափվեցին վրան: Իսկ հետո, գետնին կպած, վարմանալի նապանքով իրար կողքի շարվեցին հիացինտի մուժե անձեռակերտ «ողկույզները»: Եկավ նաև երիցուկի հերթը...*

*Վարդի քանի՞ տեսակ կա. մի անգամ պետք է ուշադիր հաշվեմ: Բայց գիտե՞ք, դա դժվար է: Տարբեր տեսակները ծաղկում են տարբեր ամիսների՝ մայիսից սկսած, մինչև հոկտեմբեր:*

*Բնության և կյանքի հիասքանչ մի կտոր է այդ փոքրիկ ծաղկանոցը: Անցորդները կանգնում են, նայում և թեթևացած, ուրախացած շարունակում իրենց ճանապարհը:*

*Մի անգամ ես տեսա տարիքավոր մի մարդու, որ վերարկուն ուսերին, կանգնել էր կուսախաղողի գալարուն թփերի մեջ կորած ցանկապատի կողքին: Հարցրի. արդյո՞ք ինքն է մշակողը: Ասաց՝ այո, ինքն է: Եվ ասաց նաև, որ ծառերի ու ծաղիկների այնպիսի տեսակներ է ընտրել, որպեսզի վաղ գարնանից մինչև ուշ աշուն մեկնումեկն անպայման ծաղկած լինի: Եվ հետո ասաց նաև, որ պատուհանից նայելիս մեկ-մեկ նկատում է, թե ինչպես անցորդները կանգնում են ու ժպտում իր ծաղիկներին:*

*Անծանոթ մարդն, իհարկե, չասաց, որ ինքը նրանց բարեկամներից մեկն է: Բայց ես դրանում համոզված եմ, որովհետև ինչքան էլ անտրամադիր լինես, ինչքան էլ հոգնած ու շոգից թուլացած, երբ մի պահ կանգ ես առնում ասֆալտով շրջապատված փոքրիկ ծաղկանոցի մոտ, կարծես ամեն ինչ փոխվում է. հոգիդ թեթևանում է և տրամադրությունդ բարձրանում:*

*Եվ կարծես ավելի հասկանալի է դառնում ճապոնական հին վըրույցը: Ծեր իմաստունը ծանր հիվանդ է. նա չի քնում, չի ուտում, նույնիսկ չի ժպտում իր սիրելիներին: Մի կերպ ձեռքով կանչում է ծառային և հասկացնում՝ «ջո՛ւր»: Ծառան, որ չափազանց շատ է սիրելիս լինում իր բարի ու իմաստուն տիրոջը, ջրի մեջ մի գեղեցիկ, վառվռուն ծաղիկ է գըցում: Երբ ջրամանը մոտեցնում է հիվանդի շուրթերին, վերջինս երկար նայում է ջրի վրա օրորվող*



*ծաղկին, ժպտում է, և հենց այդ պահից էլ սկսում է ապաքինվել: Եվ հենց այդտեղից էլ ծագում է ճապոներեն իկեբանա[1] բառը, որը նշանակում է՝ ծաղիկը ջրի մեջ:*

*Եթե այս զրույցը ես գրած լինեի մեկ տարի առաջ, ապա հենց այստեղ պետք է վերջակետ դնեի: Սակայն, ափսո՜ս, այդպես չեմ կարող վարվել:*

*Տարիներ շարունակ անցնելով այդ բակով և վայելելով այն ամենը, ինչի մասին փորձեցի պատմել ձեզ, բնականաբար իմ ծանոթներից շատերին նույնպես պատմել եմ: Մի անգամ նրանցից մեկը լսելով ինձ, մանրամասն հարցուփորձ արեց. ո՞ր փողոցում, բակի ո՞ր մասում է «քո նկարագրած այդ հրաշքանչ պուրակը», մարդն ինչպիսի՞ արտաքին ունի: Ես նկարագրեցի:*

*— Այդ մարդուն ես ճանաչում եմ: Ծաղկանոցն էլ շատ անգամ եմ տեսել,— ասաց նա:*

*Ես ուրախացած ուզում էի մանրամասներ իմանալ նրա կյանքի մասին, երբ ծանոթս ավելացրեց.*

*— Այս տարի նա ծանր վիճակ կրեց, մահացավ որդին: Նշանավոր մասնագետ էր:*

*Կարճատև զրույցն այնքան անակնկալ վախճան ունեցավ, որ ես չիմացա ինչ պատասխանել: Մի պահ ինձ թվաց, թե տարեց ծաղկաբույծը մոտակայքում է և կարող է մեկ լսել, ես չորս բոլորս նայեցի ու կամացուկ հարցրի.*

*— Ինչպե՞ս: Իսկ ծաղկանո՞ցը:*

*Երևի հարցս չափազանց անհեթեթ էր, զրուցակիցս տարակուսանքով նայեց ինձ և ոչինչ չասաց:*

*Այդ տխուր լուրը ես իմացա աշնանը և հենց հաջորդ օրը հատուկ մտադրված աշխատանքի գնացի այդ կողմով: Բակում ոչ ոք չկար, մարգենու վրա ալ-կարմիր պտուղներն էին: Պատն ի վեր բարձրացել էր լոբու միակ թուփը՝ դարձյալ ալ-կարմիր ծաղիկներով: Մյուս բույսերին ես ուշադրություն չդարձրի: Մտքումս ցավակցում էի իմ բարեկամին, մխիթարական խոսքեր փնտրում և եղելությունն այնքան ծանր ու դաժան էր թվում, որ ես անբնական չէի համարում, եթե ծաղկանոցն անխնամ մնար ու չորանար:*

*Ինչ լավ էր, որ ես սխալվեցի: Ինչ լավ էր, որ այդպես չեղավ: Մտքումս քանի անգամ եմ շնորհակալություն հայտնել նրան, բակում հանդիպելիս երախտագիտությամբ լուռ ողջունել: Այս ամառ ծաղկանոցում նույնիսկ նոր բնակիչներ հայտնվեցին. մի փոքրիկ թուփ՝ դեղին, մանրիկ ծաղիկներից կազմված կռնաձև բույլերով: Շատ եմ ուզում իմանալ այդ ծաղկի անունը, բայց առայժմ չեմ համարձակվում նրա հետ զրույցի բռնվել: Մի նորություն էլ կա. ծաղկանոցի կողմից թառմային հենված խաղողի ոլորուն, ոստոստ վազը՝ տանձյակ ողկույզներով, իսկ դիմացից փշատենին՝ նարնջագույն պտուղներով, միացել են իրար ու գեղեցիկ ամպհովանի կազմել:*

*Ինձ այնպես է թվում, որ այդ մարդու սերը իր բակի այդ փոքր հողակտորի և, ընդհանրապես բնության հանդեպ, կրկնապատկվել է, և որ յուրաքանչյուր նորափթիթ ծաղիկ ամոքիչ մի սպեղանի է նրա համար:*

*ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

# Ի՞ՆՉ ԳԻՏԵՔ ԺԱՄԱՆԱԿԻ ԵՎ ՆՈՐ ՏԱՐՎԱ ՄԱՍԻՆ

Պատանի՛ բարեկամներ, թևակոխեցինք 1975 թվականը, և մարդկության պատմության տարեգրքում ավելացավ ևս մեկ տարի:

Ժամանակի համար արգելք չկա: Նա անխախտ կերպով շարունակում է իր վազքը տիեզերական անհունությունում: Վերջին հաշվով ժամանակը անսահման է, անչափելի, ո՛չ սկիզբ ունի, ո՛չ էլ վերջ: Բայց մարդիկ ընդունել են ժամանակի այն տևողությունը, որի ընթացքում Երկիրը տիեզերական անհունությունում մի ամբողջ շրջան է կատարում Արեգակի շուրջը: Անցնելով 934 միլիոն կիլոմետր ուղի, մեկ վայրկյանում կտրում է 30 կիլոմետր տարածություն: Այդ ժամանակամիջոցն էլ անվանվեց տարի: Դրանով մարդիկ չափում են օրերը, կյանքը, իրենց գործերի պատմությունը, որպեսզի իմանան ինչի են հասել համապատասխան ժամանակամիջոցում՝ մեկ տարում: Այնպես որ, ինչպես կյանքում շատ բան պայմանական է, այնպես էլ տարին, ինչպես նաև Նոր տարին և նրա նշելու օրը:

Ճիշտ է, Նոր տարին ներկայումս, հիմնականում ընդունված է նշել հունվարի մեկին, մարդիկ այդ օրը նշելու համաձայնության եկան միայն տասնվեցերորդ դարի վերջերին (1582 թ.): Մինչ այդ ամեն մի ժողովուրդ ուներ իր ավանդական Նոր տարին: Այսպես, օրինակ, հին պարսիկները Նոր տարվա օրը ընդունել էին գարնան օրահավասարը և այն անվանել «Վարդի և գինու» օր: Այս տոնը հետագայում ընդունվեց մուսուլմանական աշխարհի կողմից և ստացավ Նովրուզ անունը, որը այսօր էլ նշում են մեծ շուքով: Ռուսները Նոր տարին նշում էին սեպտեմբերի 1-ին: Չնայած հին հռոմեացիները տարվա առաջին ամիսը համարում էին մարտը, բայց Նոր տարին դիմավորում էին հունվարի 1-ին՝ Յանուս աստծուն նվիրված ամսին: Անգլիացիները երկար ժամանակ Նոր տարին նշում էին մարտի 26-ին: Իսկ Ֆրանսիայում երկար ժամանակ Նոր տարին զուգադիպում էր Զատկի տոնին: Հայերի մոտ էլ տարվա առաջին ամիսը օգոստոսն էր և կոչվում էր Նավասարդ:

Ինչպես տեսնում ենք, ամեն մի ժողովուրդ ունեցել է իր Նոր տարին: Նման բազմազանությունը ժողովուրդների տնտեսական և կուլտուրական փոխհարաբերություններում դժվարություններ էին առաջացնում: Ուստի տասնվեցերորդ դարի վերջերից սկսած (1582 թվականին) որոշվեց Նոր տարվա սկիզբ համարել հունվարի 1-ը: Հենց դա էլ ընկավ մեր ներկա օրացույցի հիմքում:

Այսպիսով հունվարի 1-ը Նոր տարվա սկիզբը համարելը բնավ էլ պատմական իրադրության հետ չի կապվում և ընդունված է պայմանականորեն: Ժամանակի ընթացքում այն դարձավ ավանդույթ:

Ի դեպ, կան ժողովուրդներ, որ շարունակում են

[1] *Իկեբանա — ծաղկաձևարդարման արվեստ, որը մի քանի դարի պատմություն ունի և չափազանց մեծ տարածում՝ Ճապոնիայում:*





իրենց ավանդական Նոր տարին: Ինչպես, օրինակ՝ Իրանում, Աֆղանստանում և արաբական մի շարք երկրներում:

Ինչպես անցյալ հարց ու պատասխանի կապակցությամբ, նույնը և այս անգամ, խորհուրդ ենք տալիս. նախ ծանոթացե՛ք հարցերին ուշիմ, մտածե՛ք դրանց շուրջը, և կարող եք մասնակից դարձնել նաև ձեր ընկերներին: Չխուսափեք քննարկումից: Հաջորդ համարում կարդացեք դրանց պատասխանները և ստուգեք, թե ձեզանից ում պատասխանն է ճիշտ:

Հարցեր.

1. Որտե՞ղ և առաջին անգամ ինչի՞ հետ կապվեց տարվա գաղափարը:

2. Որտե՞ղ է ծնվում Նոր տարին և ովքե՞ր են առաջինը դիմավորում:

3. Սովետական Միությունում քանի՞ անգամ են դիմավորում Նոր տարին: Որտե՞ղ ամենից շուտ և որտեղ ամենից ուշ:

4. Ովքե՞ր են, որ չեն կարող նշել Նոր տարին:

5. Ովքե՞ր են, որ Նոր տարին դիմավորում են երկու անգամ:

6. Ե՞րբ է մեր երկրում մտցվել Նոր տոմարը. քանի՞ օրվա տարբերություն կա հին և Նոր տոմարների միջև:

7. Ե՞րբ և ինչի՞ց ելնելով Նոր տարվա սկիզբը համարվեց հունվարի 1-ը:

8. Ինչպե՞ս հասկանալ «Մոսկվայի ժամանակ» արտահայտությունը:

*ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ*




**ԺԱՄԱՆՑ**

*490—496 թվերը դասավորե՛ք շրջանակներում այնպես, որ երեք շեղանկյուններից յուրաքանչյուրի գագաթներում գրված չորս թվերի գումարը հավասար լինի 1975-ի:*

*Առաջարկը՝ ՍՈՒՐԵՆ ԳԱՍՊԱՐՅԱՆ*

**ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ**

*Պիոներ № 12, խաչբառ—«Անվանի նկարիչներ»*
*Դյուրեր. 2. Ռենուար. 3. Վան-Դեյկ. 4. Սերով. 5. Դելակրուա. 6. Պերով. 7. Վերմեր. 8. Դավիդ.*

Լույս է տեսնում 1923 թվականից

№ 1 հունվար 1975 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ*



«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց. № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—37—90

ՎՖ 04911: Պատվեր 2165: Տպաքանակ՝ 81700 : Տպագրական 3 մամուլ. Ստորագրված է տպագրության 27 XII 1974 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 10 Կ. ԻՆԴԵՔՍ 77806





ՄՈՒՐԱԴՅԱՆ ՄԱՐԳԱՐԻՏ, 11 տ.
Երևան



ԶԱԼԻԿՅԱՆ ԱՐԱՅԻԿ, 11 տ.
Երևան



ԱՌԱՔԵԼՅԱՆ ՄՈՒՇԵՂ, 10 տ.
Սիսիանի շրջ., Սիսիան ավան



ԱԼԱՎԵՐԴՅԱՆ ՕՖԻԿ, 12 տ.
Արարատի շրջ., գյուղ Սուրենավան



ՀԱԿՈԲՅԱՆ ԱՆՆԱ, 10 տ.
Երևան